ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄՃԷ.

# ՀԵՏԱԶՕՏԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

ԳՐԵՑ

**Հ. Յ. ՏԱՃԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1970

891.99.09
Տ-21

891.99.09
Տ-21
499

# ՀԵՏԱԶՕՏԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

ԳՐԵՑ
**Հ. Յ. ՏԱՇԵԱՆ**
Մխիթ. Ուխտէն

**ՎԻԵՆՆԱ**
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1970

Հ. Յ. Տաշեանի այս կիսաւարտ գրութիւնը նախապէս լոյս տեսաւ «Հանդէս Ամսօրեայ» Ուսումնաթերթին մէջ Յօդուածաշարքով.

1969, Թ. 7—9, էջ 293—324, Թ. 10—12, էջ 427—464, 1970, Թ. 1—3, էջ 35—58

Այժմ կը ներկայացնենք ի մի ամփոփուած առանձին գրքոյկով:

ՀՐԱՏԱԿԻՉ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Էջ

Ա Զ Դ

Առաջիկայ գրութիւնը Հ· Յակոբոս Տաշեան ձեռնարկած է գրել 13 Նոյեմբեր 1889ին· ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ· 1—8 հատուածներով կամ գլուխներով թղ· 9 = 18 էջ· § 1· ՄՈՒՏ (էջ 1)· § 2· ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԻՒՐ ՊԱՇՏՕՆԸ (էջ 1—3)· § 3· ԲԱԺԱՆՈՒՄ· (էջ 3—4)· § 4· ՅԱՐԱԿԻՑ ՄԱՄՆԱՃԻՒՂՔ (էջ 4—5)· § 5· ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ· (էջ 5—8)· § 6· ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՅԱՐԳԸ (էջ 9—11)։ § 7· ԾՐԱԳԻՐ ՄԵՐ ԳՈՐԾԻՆ (12—15)· § 8· ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ (15—18)։ Այս գրուածը կը վերջանայ հետեւեալ խօսքով· «Այսչափ ծանօթ է մեզ հայ Մատենագրութեան վրայ ճառող գրութիւններէն, որոնց մէջ կը յուսանք թէ աննշանակ տեղ մը չի գրաւեր մեր այս երկասիրութիւնը»։ Գրեթէ երկու ամիս յետոյ կրկին ձեռք կ'առնէ իր գրութիւնը 15 Յունուար 1890 եւ այս անգամ աւելի ընդարձակ ձեւով կը հասցնէ § 1—25, վերջին հատուածը կամ գլուխը կը կազմէ՝ ՀՆՈՑ ԿԱՐԾԻՔԸ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՆԿԱՏՄԱՄԲ, որ կէս կը մնայ, որուն շարունակութիւնը կարելի է գտնել Տաշեանի Հայկաբանութեան

կամ Ուսումն դասական Հայերէնի մէջ, Վիեննա 1920: Ամբողջ Ձեռագիրը կը բաղկանայ Թղ. 33 եւ էջ 65 է. մեծութիւն 40 × 25 հրմ.: Կ'աւարտի Ինճիճեանի խօսքով. «Այս ամենայն անուանք շատ իսկ ցուցանեն թէ այժմեան մերս գրոց լեզու էր նոյն իսկ լեզու, որով խօսէին նախահայեռք մեր եւ նոյն ինքն իսկ Հայկ. Ուստի եւ է լեզու իջեալ ի ժամանակէ անտի աշտարակաշինութեան, տեւեալ եւ հանապազորդեալ մինչեւ ի մեզ, որով լինի մայր լեզու» (Հնախօսութիւն Գ. էջ 2—4): Այսպէս նոյնիսկ դարուս առաջին կէսին: Ձի կրնար ըսուիլ թէ այս կարծեաց սկզբնապատճառը Ինճիճեանն է, վասն զի թէեւ Ինճիճեանն է որ այս ստուգաբանութիւններու մի քանին կը գրէ, բայց անոր նպատակն ուրիշ բան չէ եթէ ոչ իւր առեն ծանօթ անուններըը հնագոյն աւանդութեան մէջ փնտռել, եւ ոչ թէ Հայկայ լեզուն մայր լեզու կամ անփոփոխ պահուած եւ այլ նման ենթադրութիւններ ընել, որոնց գաղափարն (իսկ չունէր): Այս գործն աւարտած է 22 Յունուար 1890:

Որքան ալ այս երկասիրութիւնն 80 տարի առաջ գրուած է եւ չունի բնականաբար բանասիրութեան նոր արդիւնքներու պատկերը, սակայն նկատի առնելով նոյն շրջանի գիտութեան վիճակը, մեզ կը թուի թէ Տաշեանի այս գործէն տակաւին շատ բան ուսանելի է: Այն ծրագիրը, որ այստեղ կը պարզէ Հայ Մատենագրութեան Պատմու-

թեան համար, մեզի համար կը մնայ իբր լաւագոյն ուղին, որուն վրայէն առաջանալու ենք նման գրութիւն մը ուսումնասիրելու եւ հրատարակելու պարագային: Մինչեւ այժմ լոյս տեսած ոչ մի հայ մատենագրութեան պատմութիւն նկատի առած է այն կէտերը, որ Տաշեան իր ծրագրին մէջ պարզած է: Ինչպէս ինքն Գաթըրճեանի համանման գործին համար կը գրէ «դժբախտաբար թերի մնաց»: Նոյնը ցաւով ստիպուած ենք այստեղ կրկնել: Մենք ալ ունինք մեր առջեւ քննական եւ հետազօտական հայեացք մը Հայ Մատենագրութեան Պատմութեան Անգիր շրջանի վրայ, որուն հրատարակութիւնը կը կարծենք թէ ուրախութեամբ պիտի ընդունուի գիտական աշխարհէն: Հրատարակութեան առթիւ մեր կողմէ որեւէ փոփոխութիւն չէ կատարուած, միայն լեզուի մէջ ինչ ինչ գրաբարաձեւ սութիւններ եւ հոլովներ յարմար դատեցինք պարզել, սակայն Տաշեանի լեզուի ոճը կը մնայ անփոփոխ:

Հ. Պ. ՏԷՐ-Պ.

## ՀԵՏԱԶՕՏԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

### § 1· ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ

Մատենագրութիւն կը կոչուի ազգի մը գրական ասպարէզին կամ մտաւոր կրթութեան յիշատակարաններու գումարը: Ի հարկէ մատենագրութեան կը վերաբերին գլխաւորաբար այնպիսի գրութիւններ միայն, որոնք արժանի են իրենց ներքին արժանաւորութեամբ կամ գոնէ ուրիշ հանգամանքներով յետագայից աւանդուելու: Ազգի մը մատենագրութիւնը (անձուկ մտօք) կը սկսի այն ժամանակ, երբ ազգը գիր կը ստանայ եւ անով յաջորդ սերունդներու կը յայտնէ իւր գաղափարները: Ըսինք անձուկ մտօք, վասն զի կայ անգիր մատենագրութիւն ալ, զոր ունեցած ենք մենք ալ:

Ազգի մը մատենագրութիւնը ուղիղ համեմատութեան մէջ է այն ազգին քաղաքական պատմութեան հետ, եւ կամ՝ ինչպէս սովորութիւն է ըսել՝ մատենագրութիւնն ազգին պատմութեան հայելին է: Ազգի մը քաղաքական եւ քաղաքային յաջողութիւնները կամ արկածները զարգացումն կամ յետադիմութիւնը կ'ունենան իրենց անբաժին նաեւ մատենագրութեան յառաջադիմութիւնը կամ յետախաղացութիւնը, եւ ազգի

մը քաղաքական եւ աշխարհագրական դիրքը, բնաւորութիւնը, կրօնական զգածումը եւ այլ այսպիսի հանգամանք կու տան նաեւ մատենագրութեան որոշ ուղղութիւն եւ գոյն կամ նկարագիր մը։ Այսպէս՝ ինչպէս որ ազգին քաղաքական ընթացքին ճշգրիտ ներկայացումն է նոյն ազգին պատմութիւնը, նոյնպէս եւ մատենագրութեան յառաջախաղաց կամ յետադէմ ուղղութեան ճշգրիտ պատկերն է պատմութիւն մատենագրութեան, որ կը ներկայացնէ մեզի ազգի մը մտաւոր զարգացման պատկերը, կը սորվեցնէ նոյն մտաւոր գործունէութեան արտադրած երկերն եւ անոնց հեղինակներու վարքն ու բարքը եւ միով բանիւ՝ ազգի մը քաղաքակրթութեան գրաւոր յիշատակարանն է եւ քաղաքակրթական պատմութեան էական մասերէն մին։

Մատենագրութիւն բառն ունի ընդարձակ եւ անձուկ իմաստ մը։ Ընդարձակ մտօք մատենագրութեան պատմութիւնը կը բովանդակէ ազգի մը բոլոր մատենագրութիւնը՝ գեղեցիկն ու ուսումնականը, իսկ անձուկ մտօք՝ է լոկ պատմութիւն գեղեցիկ մատենագրութեան, այսինքն ազգային բանաստեղծական մատենագրութեան, եւ առաւել անձկագոյն մտօք՝ նաեւ իւրաքանչիւր մասնաճիւղի պատմութիւնը, զոր օրինակ Պատմութիւն աստուածաբանութեան, մեկնագիտութեան, հայրախօսութեան, պատմագրութեան, եւն։ Մեր նպատակն է Հայոց

ընդհանուր հին եւ նոր. մատենագրութեան վրայ խօսիլ եւ այն՝ աւելի ընդարձակ մտօք առնելով ընդհանուր բառը:

## § 2. ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԻՒՐ ՊԱՇՏՕՆԸ

Մատենագրութեան պատմութենէն ալ կը պահանջուի այն ինչ որ կը պահանջուի պատմութենէն, եւ գլխաւորաբար քննադատութիւն: Հնդետասան դարերէ ի վեր սկսած է եւ կը շարունակուի մեր մատենագրութիւնը· այսչափ դարերու մէջ շատ փոփոխութեան ենթարկուած են մեր մատենագրութիւնները, շատ աղաւաղմունք, փոփոխութիւններ կամաւ թէ ակամայ եւ խարդախութիւններ անգամ տեղի ունեցած են, գրութիւն մը տալով անոր՝ որուն չէ եւ ջնջելով հեղինակին անունը՝ որուն էր արդեամբ:

Մեր մատենագրութեան (գէթ հին եւ միջին շրջանի) նկարագիրն աւելի եկեղեցական է, եւ այս աւելի պարտք մը կը յաւելու մեր վրայ քննադատութեան: Յայտնի է որ հին ժամանակները կրօնական վէճեր ո՛րչափ մեծ ազդեցութիւն ունեցած են գրոց վրայ, ո՛րչափ յապաւումներ եւ յաւելուածներ եւ օտարութիւններ, ստանուն գրութիւններ եկած են երեւան եւ այն գլխաւորաբար հերձուածողաց եւ հերետիկոսաց գործն էր ամէն ժամանակ եւ ամէն ազգի մէջ: Շատ անգամ նոյն իսկ մատենագիրներ էին որ

իրենց գրութեան վրայ կը դրոշմէին նշանաւոր մատենագրի մ՚անունը՝ աւելի յարգ տալու համար գրութեան: Շատ յաճախ էր այս յոռի արուեստը հին Յունաց եւ մանաւանդ Ասորւոց քով, բայց չէր անծանօթ եւ Հայոց, որուն դէմ արդէն շատ կանուխ ատեն բողոքուած է [1]:

Ակամայ աղաւաղումներ ալ անհնար էր որ պակսէին գրողներու անմտադրութեամբ կամ նաեւ անհողութեամբ, սխալ ենթադրութեամբ գրոց վերնագիրները փոխելով կամ ուղղել կարծելով, վերջապէս նաեւ ժամանակին եւ այլ պարագայից օժանդակութեամբ վերնագրի ջնջելովը. Թող որ կան շատ գրողներ որ ըստ հեշտի կը համառօտեն ու կը փոփոխեն առաջադիր օրինակը, որուն իբրեւ օրինակ կրնան բերուիլ ճառընտիր կոչուած հաւաքածոներն որոնք սովորաբար լի են աղաւաղութեամբ [2]:

Այս ամէնը կը ցուցնեն քննադատութեան կարեւորութիւնը, որ պիտի ընտրէ ճշմարիտն ու սուտը, վաւերն ու անվաւերն եւն: Հարազատ է գիրք մը երբ առանց խարդախութեան այսինքն առանց օտարամուտ յաւելումի ու փոփոխութեան մեզ հասած է, որուն հակառակն է անհարազատ: Վաւերական է գիրքը երբ արդեամբք անո՛րն

---

[1] Հմմտ. Ղազար Փարպեցի, տպ. Վենետիկ. 1873. Յօջր. եւ էջ 14:

[2] Հմմտ. Հանդէս Ամսօրեայ, Բ Տարի (1888). Թիւ 2, էջ 17:

*է որուն կը տրուի, այս թէ ոչ* անվաւերական (apocryphe) *է կամ* ստանուն pseudonyme) *կամ դէթ* տարակուսական = *Ասոնք ընտրելն է պաշտօն քննադատութեան, որուն պարտքն է գրութեան վաւեր կամ անվաւեր ըլլալուն* յայտանիշ *նշանները որոնել:*

*Անվաւերութեան նշան են ընդհանրապէս՝ ա) Նոյն գրութեան բովանդակութեան, կարծեաց, պատմած կամ յիշած դէպքերու եւ պարագաներու* չյարմարիլն *հեղինակին՝ որուն կը վերաբերի՝ եւ ժամանակին յորում գրուած կ'ըսուի: Երբ դ. օ. Ագաթանգեղեայ մէջ Ս. Բարսղի* (330—379) *պատարագամատուցէն փոխառութիւններ կը նշմարուին, ո՞վ կրնայ ընդունիլ որ Ագաթանգեղոս Տըրդատայ քարտուղար եւ անոր կենդանութեան ատեն* († 336 *Յ. Ք.*) *գրուած ըլլայ, ուստի*

*բ) Նշան են գրութեան լեզուին, ոճին եւ նկարագրին* անմիաբանութիւնն *ու* հակառակութիւնը: *Այսպէս երբ Եւսեբեայ Քրոնիկոնը* ոսկեդարեան *լեզու է, իսկ Խորենացի չունի ոսկեդէն լեզուի յատկութիւնը, կը հետեւի թէ սխալ է այն կարծիքը որ յիշեալ գրութեան թարգմանիչ կը դնէր Խորենացին, նոյն պատճառաւ Եղնիկայ չէր կրնար տրուիլ* Նեղոսի խրատք *կոչուածը: գ) Նշան են գրոց մէջ գտնուած կարծիք, խօսք եւ նմաններն, որոնք հակառակ են հեղինակին այլուստ ծանօթ կարծիքին, խօսքին, իւր ուսած դպրոցին եւ իւր իսկ ուղղութեան եւն: Վերջապէս* տարակուսական *է գրութիւնը երբ երկու կողմն*

ալ կան բաւական զօրաւոր ցուցումներ կամ գէթ մի կողմն այնչափ՝ որ կասկածելի կ'ընէ հակառակ կողման ապահովութիւնը:

Ընդհակառակն վաւերական է գիրքը երբ բոլոր վկաներն ու պարագաները ճշդիւ նոյն հեղինակը կը ցուցնեն: Այսպիսի նշաններ են՝ ա) Երբ ժամանակակից եւ հաւատարիմ հեղինակներ կը յիշեն գիրքն եւ իր հեղինակը կամ ուրիշ վաւերական յիշատակարաններէն կը հաստատուի նոյնը: բ) Երբ բոլոր ձեռագիրք միաբան նոյն վկայութիւնը կու տան եւ գրքին ներքինը հակասութիւն չի բովանդակեր. գ) Երբ հեղինակն անձամբ կը վկայէ իր այս կամ այն գրքի նկատմամբ եւ դ) Գրութեան ներքին բովանդակութիւնը, լեզուն, ոճը, դպրոցական ուղղութիւնը, կարծիքներն եւն ուրիշ հեղինակի չեն պատշաճիր, այլ ճշդիւ անոր՝ որուն կը տրուի գրութիւնը:

## § 3. ՅԱՐԱԿԻՑ ՃԻՒՂԵՐԸ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

Մատենագրութեան պատմութիւնն իբրեւ ընդհանուր գիտութեան ցանցին օղակներէն մին հարկաւ սերտ կապ եւ աղերս ունի յարակից գիտութեան ճիւղերուն հետ: Մեր մատենագրութեան համար կ'արժեն գլխաւորաբար հետեւեալները:

1. Հայկաբանութեան պատմութիւն: Լեզուն սերտիւ կապուած է մատենագրութեան հետ եւ ինքն է շատ անգամ ազգի մը մատե-

նագրութեան այլեւայլ դարագլուխները կազմողը։ Մեր մատենագրութեան մէջ ալ, որ հարկաւ բացառութիւն չէր կրնար կազմել, լեզուն է գրեթէ հիմը մատենագրական այլեւայլ շրջաններու եւ բաժանմանց։ Հայկաբանութեան պատմութեան պաշտօնն ըլլալով հետազօտել Հայ Լեզուի պատմութիւնը, անոր այլեւայլ փոփոխութիւններն եւ կրած կերպարանափոխութիւնն դարուց ի դարս իւրաքանչիւր ժամանակի մատենագրաց գրութեանց մէջ կամ նաեւ այս կամ այն մատենագրի լեզուի օրինաց հպատակիլն կամ ոչ կամ գուցէ նաեւ բռնի կամակորելն (ինչպէս եղած է Հայ լեզուի նկատմամբ շատ անգամ) — հետեւապէս մեծ լոյս կը սփռէ նաեւ մատենագրութեան պատմութեան վրայ։

2. Ազգային եւ Եկեղեցական Պատմութիւն։ Մեր գլխաւորաբար հին եւ Միջին մատենագրութիւնը գրեթէ մի միայն եկեղեցական դասուն ձեռքն էր եւ այն՝ մեծ մասով բարձրաստիճան եկեղեցականներու, այսպէս զ. օ. կաթուղիկոսներու, որոնց գրութիւններու պատմութիւնը անանջատ կապուած է մեր արտաքին պատմութեան հետ։ Ասկէ դիւրաւ կարելի է իմանալ թէ ո՛րչափ նպաստամատոյց է մատենագրութեան պատմութեան՝ ասոնց կենսագրութիւնը, իրենց կարծեաց, կրօնական ուղղութեանց եւ նաեւ քաղաքական ընթացքի ճշգրիտ նկարագիրը, այնու մանաւանդ որ մեր մատենագրութեան ոչ դոյզն մասը

լոկ այս կամ այն դէպքերու, վիճաբանութեանց եւ կրօնական շփմանց արդիւնքն է:

3. Այլեւայլ մասնաճիւղերու պատմութիւնը եւ հետազօտութիւնը մեծապէս կարեւոր եւ էական է մեր մատենագրութեան համար, նաեւ եթէ օտար ազգերու գրականութեան շրջանին մէջ միան այս հետազօտութիւնները, վասն զի մերինները շատ անգամ լոկ թարգմանութիւն են անոնց: Այսպէս զ. օ. Արաբական բժշկութեան պատմութիւնը անհրաժեշտ լուսաբանիչ է մեր միջին դարու բազմաթիւ բժշկարանաց մթին մասերուն, որոնք թարգմանութիւն, բանաքաղութիւն եւ հաւաքում են լոկ շատ անգամ արաբացի բժշկարաններէն: Այս՝ միւս ճիւղերուն մէջ ալ:

4. Վերջապէս մեծ աղերս ունի Հայրախօսութիւնը, այսինքն հին եկեղեցւոյ սուրբ Հարց, եկեղեցական մատենագրաց եւ նաեւ լոկ քրիստոնէական մատենագրաց (— ուստի ճշգրտագոյնս խօսելով՝ Քրիստոնեական հին մատենագրութեան պատմութիւնը —) գրոց, վարուց ու վարդապետական կարծեաց հետազօտութիւնը, նկատելով զանոնք իբրեւ վկայ եկեղեցւոյ վարդապետութեան: Հայրախօսութեան այս աղերսը մեր մատենագրութեան հետ՝ երկու կողմանէ կը ծագի. նախ՝ մեր նաեւ ինքնագիր մատենագրութեան մեծ մաս մը կրօնական եւ եկեղեցական գրութիւններ են, ուստի որոնք ուղղակի կը վերաբերին նաեւ Հայրախօսու-

թեան կամ ճշդիւ ես՝ Քրիստոնէական մատենագրութեան պատմութեան. երկրորդ՝ (որ եւ գլխաւորն է), մեր մատենագրութեան կէսն եւ աւելին լոկ թարգմանութիւն է Յունաց եւ Ասորւոց (մասամբ եւ Լատինացւոց) Ս. Հարց եւ այլ եկեղեցական մատենագրաց գրութեանց, այնպէս որ մեր մատենագրութեան շատ կնճռեալ մասերը Հայրախօսութեամբ միայն լոյս կրնան առնուլ: Որչափ որ Հայք նշանաւոր եղած են անթիւ թարգմանութեամբք, տուժած են միւս կողմանէ, այնու որ այս պարագան եղած է գլխաւոր պատճառներէն մին մեր մատենագրութեան աղքատութեան եւ միակողմանիութեան: Բայց ասոր վրայ քիչ մ'ետքը:

## § 4. ԲԱԺԱՆՈՒՄ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

Մինչեւ այժմ ըսուածներէն յայտնի է մատենագրութեան պատմութեան պաշտօնն ու նպատակը, որուն պիտի հասնի որոշ ուղղութեամբ եւ կարգով: Մեր մատենագրութիւնը երեք գլխաւոր նկարագիր ունի: Ա.) Հին լեզուով եւ հին կրթութեամբ ու հին լեզուներու (Յունաց եւ Ասորւոց) ազդեցութեան տակ աճած ու զարգացած, ուստի հին մատենագրութիւն: Ասոր հետ զուգընթաց է Բ) ռամկօրէն կամ ռամկախառն լեզուով եւ Արաբացւոց (մասամբ միայն Լատինացւոց) լեզուին ու մատենագրութեան ազդեցութեան տակ զարգացած մատենագրութիւն

մը, զոր կրնանք միջին անուանել: Վերջապէս Գ) Նոր լեզուով եւ Նոր կրթութեամբ (տպագրութեան գիւտէն ետքը) եւ Նոր ազգերու լեզուի ու մատենագրութեան ազդեցութեան տակ, որ է Նոր մատենագրութիւն: Այսպէս երեք գլխաւոր միջոցներ կամ շրջաններ կ'ունենանք, թէեւ միջինը բոլորովին ուրոյն ժամանակ մը չի կազմեր, այլ ընթացակից է հնոյն, այնպէս որ միեւնոյն ժամանակի մատենագրաց մաս մը այս եւ միւս մասն այն ուղղութեամբ կը շարժի, բայց միշտ տիրող նկարագիրն է ռամկախառն լեզու եւ արաբական եւ մասամբ հին գաղղիական ազդեցութիւն, — ուստի բովանդակ Հայոց մատենագրութիւնը երեք գլխաւոր մասի կը բաժնենք հանդերձ իրենց մանր ստորաբաժանումներով՝ այսպէս.

Ա. ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ, որ կը բաժնուի՝

1. Անգիր ժամանակ, անյիշատակ ժամանակներէն սկսեալ մինչեւ 406 Յ. Ք.:

2. Գրաւոր (Հին) ժամանակ, որ է 406—750 Յ. Ք. որ դարձեալ կը բաժնուի՝

ա) Ոսկեղէն դարու ժամանակ, 406—450 Յ. Ք. (Ա. թարգմանութիւն):

բ) Յունական ժամանակ, 450—650 (Ա. թարգմանութիւն):

գ) Սփւնեաց դպրոցի ժամանակ, 650—750. Բ. թարգմանութիւն:

Բ. ՄԻՋԻՆ ԿԱՄ ՌԱՄԿԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ, 750—1700, որ դարձեալ կը բաժնուի՝

1. Պղնձի ժամանակ (*անձուկ մտօք*), 750—1050։

2. Երրորդ թարգմանութեան ժամանակ, 1050—1300։

3. Լատինական կամ երկաթի ժամանակ, 1300—1700։

Գ. ՆՈՐ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ, 1700—1891, *որ կը բաժնուի՝*

1. Նորոգման կամ Մխիթարեանց ժամանակ, *որ է Մխիթար Աբբայէն մինչեւ արեւելեան հայ մատենագրութեան սկիզբը*, 1700—1850, *որ ունի՝*

*ա*) Առաջին դպրոց, 1700—1850, *որուն հետ նաեւ*

*բ*) Երկրորդ դպրոց, 1835—1850։

2. Արդի ժամանակ, 1850—1891, *որ երկու գլխաւոր նկարագիր ունի. ա*) Արեւելեան *եւ բ*) Արեւմտեան *մատենագրութիւն*։

*Այս բաժանումները պէտք չէ ուսողական ճշդութեամբ առնուլ, վասն զի հոս բաժանման հիմն առնուած է նոյն ժամանակին մատենագրութեան* ընդհանուր *նկարագիրը, այլ մասնական բացառութիւններ միշտ կրնան գտնուիլ, այսպէս երբ* ռամկական ժամանակ *կը դրուի* 750—1300, *չի հետեւիր որ այս միջոցին մէջ գրուած որեւէ գրութիւն* ռամկական լեզուի *նկարագիր ունենայ։ Ինքնին յայտ է որ յիշեալ բաժանումներն ալ կրնան ունենալ դեռ իրենց ստորաբաժանումները ուրիշ մանր կէտերէ առեալ, սա-*

կայն բաժանման հիմ չէ դար դար բաժնել, որ անընական է, բայց դժբախտութեամբ ազգային մատենագրութեան դրողներէն շատերը հետեւած են այս ոճին:

*Այս ամէնն ընդհանուր մատենագրութեան նկատմամբ. գալով մասնական հեղինակներու՝ դէթ հին մատենագրութիւնը եւ այն գլխաւորաբար հինգերորդ դարու մատենագիրներն աւելի մանրամասն պիտի խօսուին: Իւրաքանչիւր մատենագրին ալ կըրնայ եւ պէտք է գիտնալ կենսագրութիւնը, իւր երկասիրութիւններն, անոնց վաւերական ըլլալը կամ թէ ոչ հարազատ, ներքին արժէքն եւ այլ հանգամանքները, նոյն գրոց մէջ նշմարուած ուղղութիւններն ու անոր ազդեցութիւնը: Պէտք չէ մոռնալ նաեւ թէ ի՛նչ դիրք ունի նոյն գրութիւնն արդի քննադատական մատենախօսութեան մէջ, ուստի թէ ի՛նչ հրատարակութիւններ, թարգմանութիւններ եւ քննութիւններ եղած են նոյն գրոց:*

## § 5. ԾՐԱԳԻՐ ՄԵՐ ԱՅՍ ԳՈՐԾԻՆ

*Արդէն նախընթաց հատածը (§ 4). դրաւ մեր առջեւ Հայ մատենագրութեան բաժանումն եւ քանի մը դիտողութիւններ ընդհանուր մատենագրութեան եւ մասնական հեղինակներու քննութեան նկատմամբ. ըստ այսմ պիտի ընթանանք յընթացս գործիս, ուստի հոս կը մնայ մեզի դեռ քանի մը դիտողութիւններ ընելու: Ըսինք թէ իւրաքանչիւր*

հեղինակ պիտի նկատուի հետեւեալ կերպով. նախ՝ թէ նոյն հեղինակին գրութիւնները քանի հրատարակութեանց առիթ տուած են կամ թէ որոնք գրաւած են նոյն քննութեամբ, որուն վրայ պիտի յաւելունք նոյն հեղինակին գրութեան եւ այլեւայլ լեզուով եղած թարգմանութեանց ցանկն՝ ըստ կարելւոյն: Ապա պիտի նկատուի հեղինակին վարքը համառօտիւ որչափ առ այժմ ծանօթ է, եւ յետոյ իր երկասիրութիւնները մի առ մի քննել: Ի վերջոյ թէ հնար է, տեսնել թէ նոյն գրութիւններու հրատարակութեանց եւ թարգմանութեանց ի՛նչպիսի ըլլալը եւ թէ ո՛ւր կը գտնուին նոյն գրքերու ձեռագիր օրինակները: Բայց պէտք է միտ դնել հոս, որ ճշգիւ խօսելով անհնար է այժմու հանգամանաց մէջ լիովին պահել այս ծրագիրը, այնու մանաւանդ որ մեր մատենագրութեան մեծ մաս մը դեռ չէ իսկ հրատարակուած թող թէ քննուած, այլ ծանօթ է միայն այս կամ այն գրատան կամ առանձնականի ձեռագիրներէն, որով անմատչելի է մատենագրութեան պատմութիւն գրողի մը, իսկ այլուստ նաեւ անոնք որոնք կրնային օգտել նոյն ձեռագիրներով՝ շատ սակաւ տեղեկութիւն կը հաղորդեն մեզի: Բաց աստի մեր մատենագրութիւնը դեռ շատ մաղելու կարօտ է, շատ բան բոլորովին այլազգ կը գտնուէր անկէ նոյնիսկ քանի մը տասնեակ տարիներ յառաջ եւ այսօր այլազգ՝ նորանոր քննութեանց հետեւութեամբ: Շատ ճառեր, գրութիւններ




1298-81

բոլորովին ուրիշ հեղինակի տրուեցան քննութեամբ, որոնք ստանուն հեղինակներու կը տրուէին: Թէ նաեւ մեր կարծիքներէն չատերը (որ պիտի ջանանք ըստ կարելւոյն ուղղագոյն կարծեաց հետեւիլ) ամենամերձաւոր ապագայի մէջ անգամ գուցէ բոլորովին պիտի փոխուին, այս մասին համոզուած ենք եւ հարկաւ կը համոզուի այն որ անձամբ միջամուխ եղած է հայ մատենագրութեան հետազօտութեան: Մեր գործը պակսած պիտի համարինք, եթէ գոնէ գրգիռ եւ գոյգն օգնութիւն մ'ըլլայ այսպիսի հետազօտութիւններու յառաջադիմութեան:

Իւրաքանչիւր հեղինակի գրութեան հետ պիտի յիշուին նաեւ իւր ըրած թարգմանութիւններն ալ, բայց եւ այս ամենամեծ դժուարին եւ կնճռոտ կէտերէն մին է: Անհամար թարգմանութիւններ ունինք, որոնց թարգմանչաց անունն անգամ անծանօթ է մեզ, բայց չատ անգամ նաեւ բնագրին հեղինակն անծանօթ, կեղծ կամ դէթ կասկածաւոր է: Ի՞նչպէս վարուելու է այս պարագային մէջ եւ այս թարգմանութեանց վրայ ո՞ւր ճառելու. — ահա բաւիղ մ'անելանելի: Եթէ դէթ գիտնանք թէ ո՛ր դարու մէջ թարգմանուած են, այն ատեն իւրաքանչիւր շըրջանին վերջ կը յաւելունք միշտ երկրորդ մասը՝ թարգմանութիւնք անուամբ, (առաջին մասը կը կազմեն ինքնագրութիւնները եւ ծանօթ անձերու թարգմանութիւնները), որուն մէջ կը զետեղենք զանոնք: Բայց քիչ

անգամ գիտենք ապահովութեամբ թարգմանութեան դարն անգամ, այն ատեն այս կռուանէն ալ կը զրկուինք։ Սակայն չուզելով բոլորովին անյիշատակ թողուլ, նաեւ ասոնք թարգմանութիւնք վերնագրով մասին իբրեւ ուրոյն բաժին կը դնենք շարունակաբար, թէեւ ասով կարելի է որ 8դ դարու թարգմանուած մը 12դ դարու թարգմանութեանց մէջ դրուի կամ հակառակը։ Բայց առ այժմ քանի որ քննուած չեն սոյն գրութիւնները, մանաւանդ թէ եւ ոչ հրատարակուած եւ անմատչելի մնացած շատերէն, որոնց ձեռագրաց եւ ոչ գոհացուցիչ ցուցակ մը ունինք մեր ձեռքը, անհնար է լաւագոյն բան մը յուսալ, ուստի այս նկատմամբ որեւէ պակասութիւն հարկաւ ներողութեան արժանի է։ Վերջին դիտողութիւնը ձեռագրաց ցուցակին նկատմամբ՝ ուրիշ դիտողութեան մը կը տանի զմեզ։

## § 6. ՀԱՅԿԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ՑՈՒՑԱԿՔ ՁԵՌԱԳՐԱՑ

Ցանկալի էր ըսինք, որ իւրաքանչիւր գրոց վերջը նշանակուէին նաեւ ձեռագիրներն եւ անոնց տեղը, որչափ հնար է։ Բայց դժուարագոյններէն է։ Ձեռագրաց շատ բազմութիւն կայ այլեւայլ կողմեր թէ Հայրենիք եւ թէ արտասահման գտնուող հաւաքածոյից մէջ, որոնց ոչ միայն հիմնական քննութիւն չէ եղած, այլ եւ ոչ գէթ վերի վերոյ ցուցակ մը հրատարակուած շատ ան-

դամ: Գլխաւոր ժողովածոները կը գտնուին ա) էջմիածին. բ) Երուսաղէմ, Ս. Յակոբայ վանքը. գ) Մխիթարեանց Վենետիկի դրատունը. դ) Մխիթարեանց Վիեննայի դրատունը. ե) Փարիզի ազգային մատենադարանը. զ) Անտոնեանց մատենադարանն ի Կ. Պ. է) Հայաստանի այլեւայլ վանքերու մատենադարանները, գ. օ. Բարձրբերդի Ս. Աստուածածնայ մէջ, Սեւանայ վանքը (իբր 200), Մշոյ Ս. Կարապետը (150 ի չափ), Տաթեւայ վանքը (250 չափ) եւ այլ վանքեր. ը) Հռոմ, Միւնխէն, Լոնդոն, Վիեննա, Պետերբուրգ, Բերլին, Մոսկուա եւ այլ քաղաքներու հրապարակական դրադարաններու մէջ եւ թ) Լազարեան ճեմարանի մատենադարանն ի Մոսկուա, թող չատ մ'առանձնականներն որոնք չատ անգամ մեծ հաւաքածոներ ունին[3]:

Այսչափ ձեռագրաց դոնէ ընդհանուր ցուցակ մ'ըլլար, բայց այս ալ կը պակսի: Բարեբախտաբար հրատարակուեցաւ ի ձեռն Կարենեանցի[4] էջմիածնի ձեռագրաց ցու-

[3] Հմմտ. Ք. Պատկանեան, փորձ, 1880, I, 20—26:

[4] Մայր ցուցակ ձեռագիր մատենից սրբոյ աթոռոյն էջմիածնի, տպագրեալ ծախիւք ի Կարնոյ գաղթական Յակոբայ վարժապետի Կարենեանց: Թիփլիզ, 1863: Այս ցուցակը 2340 ձեռք ձեռագիր կը ցուցնէ, Աւսկէ յառաջ Պարոն Հանի միջնորդութեամբ չինուած է, զոր գաղղիերէն թարգմանեց եւ հրատարակեց 1840ին Բրոսէ (Catalogue de la Bibliothèque d'Edschmiadzin), 481 ձեռագիր միայն կը յիչէ եւ ի է սխալներով:

ցակը, թէեւ շատ թերի, չփոթ եւ կցծի տեղեկութիւններով. եւ այժմ արդէն 28 տարի անցած է, եւ նոյն գրատունը քանի մը հարիւր օրինակներով ճոխացած է, որոնք անծանօթ կը մնան: Աւելի յաջող է Մոսկուայի Ճեմարանին ձեռագրաց ցուցակը[5], բայց եւ այս լոկ անուանց շարք մըն է առանց որեւէ տեղեկութեան: Օրինակելի է Բերլինի[6] Մատենադարանի հայ ձեռագրաց ցուցակը, եւ նաեւ Փարիզինը[7]: Հռոմայ ձեռագրաց մի քանին հրատարակեց Յովս. Ասեմանի[8], բայց այժմ գրեթէ երկու դար անցած եւ նորանոր ձեռագիրներ հաւաքուած են Հռոմ եւ Իտալիոյ այլ քաղաքներու մէջ,

---

[5] Ցուցակ մատենից եւ գրչագրաց որ ի մատենադարանս Լազ. ճեմ. արեւել. լեզուաց (ճակատն ռուսերէն) Մոսկուա, 1888: 150 ձեռագիր կը յիշուի: Ուրիշ ցուցակ մ'ալ 1861ին լոյս տեսաւ:

[6] N. Karamiantz, Verzeichnis der Armenischen Handschriften zu Berlin. Berlin, 1888, իւր 105 հատոր Պերլին արքունի գրատան ձեռագրաց ընդհանուր ցուցակին: Հեղինակ համառօտ ցուցակ մ'ալ հրատարակած է՝ Բազմավէպ, 1886, էջ 183: Գործքն է 88է, եւ 99 ձեռագիր յիշատակարանօք եւ մանրամասն տեղեկութեամբք: Քննդ. Հանդէս Ամս. Գ. 1888. Թիւ 7, էջ 130:

[7] Հին ձեռագրաց ցուցակ մը հրատարակեց Guilleaume de Villefroy, Catalogus Manuscript. Bibliothecae Regiae. I, 1739, էջ 76—99:

[8] *J. Sim. Assemani*, Bibliotheca Orientalis. (4 հատոր.) Romae, 1719—1728, որուն իւրաքանչիւր հատորին վերջը կայ Վատիկանու ձեռագրաց ցուցակը:

*որոնք անծանօթ են մեզ. այսպէս եւ նաեւ Լոնդոնի, Միւնխէնի եւ ուրիշ քաղաքներու ձեռագիրները: Բայց զարմանալին այն է որ եւ ոչ Վենետիկեան Մխիթարեաններու հարուստ եւ ընտիր ձեռագիրներու ճոխ ժողովածոյի գոնէ համառօտ ցուցակ մը ի լոյս ելած է, մինչդեռ իրենց նշանաւորներէն մին է որ նոր ժամանակներս առաջարկեց հայերէն բոլոր ձեռագրաց ցուցակ մը յօրինել*[9]*: Քանի մը հարիւր ձեռագիր կայ Վիեննայի Մխիթարեանց դրատունն*[10]*, որոնց ընդարձակ եւ գիտնական ցուցակը կազմելու ձեռնարկուած է, ի մօտոյ լոյս կը տեսնէ, նոյնպէս եւ Վիեննայի կայսերական դրատան 30ի չափ ձեռագրացը*[11] *եւ Միւնխէնի արքունի դրատան ցուցակը*[12]*: Հայաստանի եւ այլ տեղի վանքերու, եկեղեցիներու եւ առանձնականներու քով գտնուող ձեռագիրներ մեծաւ մասամբ դեռ մութի մէջ ծածկուած եւ միայն քանի մը ակնարկութիւններ եղած են մերթ ընդ մերթ*[13]*:*

---

9 *Հ. Գար. Վ. Զարբհանելեան, Մատենդ. Հայկ. Թարգմ. Վենետ.* 1889. *Յոլր. ԺԶ—ԻԱ:*

10 *Առանձնականք երբեմն աւելի բազմաթիւ ձեռագրաց ժողովածոյք կ'ունենան: Տես Վիեննայի Մխիթարեանց ձեռագրաց վրայ* Նոր-Դար, 1889 *Թ.:*

11 Հանդէս Ամս. *Ե.* 1891. *Թիւ* 1—5:

12 Հանդէս Ամս. *Ե.* 1891, *Թիւ* 8, 10—12:

13 *Այս նկատմամբ մեծ արդիւնք ունին՝* Գիւտ Քհ. Աղանեանց, *որ այսպիսի այլեւայլ ձեռագրաց վրայ տեղեկութիւն կուտայ մանրամասն. Հմմտ.* Արձագանգ, 1888, *Թիւ* 2, 4, 9, 10, 11, 12, 15, 25, 26, 27, 30: — *Կրակաւ* Զարտորիսկի *իշխանին մատենա-*

Բուսական թուով ձեռագիրներ նշանակած է (բայց ընդհանրապէս շատ համառօտ եղանակաւ) Գ. եպ. Սրուանձտեանց իւր այլեւայլ գրոց մէջ, գլխաւորաբար Հնոց ու Նորոց, Գրոց բրոց, Աղբար Թորոս եւ աւելի Համով-Հոտով գրութիւններու մէջ[14], նոյնպէս Ղ. Փիրղալէմեան իւր Նօտարք Հայոց գրութեամբ[15], որուն առաջին հատորը միայն հրատարակուած է ժողովածոյք տարեգրոց, արձանագրութեանց եւ յիշատակարանաց ձեռագրաց, բայց բուն ձեռագիրներու վրայ դոյզն տեղեկութիւն միայն կու տայ։

Այսպէս ընդհանուր եւ մանրամասն ցու-

դարանին քանի մը հայ ձեռագրաց վրայ տես Հանդէս Ամս. Ա. 1887, Թ. 4. էջ 55։ — Պուղտար գաւառի քանի մը ձեռագրաց վրայ ալ նոյնպէս հմմտ. Հանդէս Ամս. 1889, Թ. 12. էջ 269։ — Ինչ ինչ ձեռագրաց վրայ տես՝ Արշալոյս Արարատեան, 1862, 691 եւ 1868, 845, Հայաստան, 1847, 13—66, 27—80, 1848, 49—102, 50—130, 2—107. եւ Էնփիանեան եղբարց 100ի չափ ձեռագրաց վրայ՝ Հայաստան, 1848, 6—111, 7—112, 15—120, ձեռագրաց յիշատակարաններ՝ Հայաստան, 1851, 51, 3—55, 5—57, 8—60, 22—74, 34—86, 41—93, 1852, 46—98, 48—100, 49—101։ Տես նաեւ Եւրոպա, 1848, 6, 8, 9. Մասիս, 8852, 58—70 շատ հետաքրքրական։ — Կերլայի ժողովրդապետական եկեղեցւոյ ձեռագրաց վրայ տես Հանդէս Ամսօրեայ, Դ' 1890, Թիւ 1. էջ 19։

14 Գ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար. Ա. Հտր. Կ. Պ. 1879։ Բ. Հտր. 1885°. — Համով-Հոտով, Կ. Պ. 1884°։ — Հնոց ու Նորոց (ձեռագրաց ցուցակ, յիշատակարանք) Կ. Պ. 1874 — Գրոց եւ բրոց, Կ. Պ. 1874։

15 Ղեւոնդ Վ. Փիրղալէմեան, Նօտարք Հայոց։ Կ. Պոլիս, 1888։ Ը. 232 էջ։

ցակ մը բաղձալի էր, բայց կը պակսի դեռ եւ ի հարկէ պիտի պակսին նաեւ քննական հետազօտութիւններ մեր ձեռագրաց դրչութեան արուեստին, մանրանկարներու, զարդագրերու եւ ուրիշ նման կէտերու վրայ: Թէեւ Յ. Մուրիէ զաղղիացին հրատարակած է իբրեւ այսպիսի հետազօտութիւն մ'իւր «Էջմիածնի գրատունն եւ Հայկական ձեռագիրք» անուն գործը[16], բայց այս լոկ քաղուածոյք մըն է Ուվարով կոմսին ձեռագրաց նկարագրութեան, ինչպէս դատած է օտար իսկ բանասէր մը[17]: Այսչափ բաւական է կարծենք ցուցնելու թէ ներկայ վիճակի դրութեան մէջ անհնար է յուսալ որ ամէն մասով կատարեալ գործ մը հրատարակուի այս նիւթիս (Հայոց մատենագրութեան պատմութեան) նկատմամբ: Այժմ կը մնայ մեզ միայն տեսնել թէ ի՛նչ աղբիւր ունեցած ենք կամ ճշդիւ ըսելով՝ թէ որոնք փորձած են գրել այս ճիւղիս մէջ:

## § 7. ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

Շատ քիչ կան այնպիսի դրութիւններ մեր մէջ, որոնք մեր բովանդակ մատենա–

16 J. Mourier, La Bibliothèque d'Edchmiadzin et les manuscripts Arméniens. Tiflis, 1885.

17 Ouvaroff, ի Բանակցութիւնս Հնախօսական ժողովոյ ի Տփղիս յամին 1880: Հմմտ. Վ. Սասսուն, Հայոց Ձեռագիրները եւ նոցա ծաղկանկարները. (J. Mourierի գործին առթիւ) Թարգմանեց՝ Ս. Մալխասեան, ի Թերթին Արձագանգ, 1886, Թիւ 25, 26, 29:

գրութեան վրայ ճառեն ի պաշտօնէ, սակայն բազմաթիւ են թէ հայերէն եւ թէ օտար լեզուով հրատարակութիւններ եւ քննութիւններ այս կամ այն մատենագրին եւ գրութեանց վրայ, թէպէտ եւ ասոնք ալ աւելի հին ժամանակի պատմագիրներու վրայ են, մինչդեռ ուրիշ բազմաթիւ գրութիւններ մեծ մասով թարգմանութիւններ են եւ այն ոչ հրատարակուած: Երկու տեսակ գրութիւններ կան մատենագրական նիւթերու վրայ ճառող. նախ՝ այնպիսիներ, որոնց նիւթը չէ թէեւ մատենագրական պատմութիւն, այլ ուրիշ տեսակէտէ առեալ՝ մատենագրութեան այս կամ այն ճիւղին վրայ գրած են իրենց գրութեանց մէջ, եւ երկրորդ՝ այնպիսիներ, որոնց նիւթն է ուղղակի մատենագրութեան պատմութիւնը:

Առաջիններու մէջ նշանաւոր է Հ. Միքայէլ Վ. Չամչեանի *ընդարձակ Հայոց* պատմութիւնը [18], որ գլխաւորաբար իր ծանօթութիւններու մէջ մատենագրական նիւթերու վրայ ալ կը խօսի, թէեւ շատ տեղ անճիշդ տեղեկութիւններ միայն կը հաղորդէ: Աւելի մեծ յարգ ունի Հ. Մկրտիչ Վ. Աւգերեանի *Հսկայ գործը*՝ լիակատար վարք եւ վկայաբանութիւն Սրբոց[19], որուն մէջ գլխա-

[18] Հ. Միքայէլ Վ. Չամչեան, *Պատմութիւն Հայոց (երեք հատորք ի վեց գիրս հանդերձ ծանօթութեամբք)*. Վենետիկ, 1784: — *Համառօտ անգլիերէն թարգմանութիւն ի ձեռն* Joannes Andall, Calcutta, 1827, *երկու հատորք*:

[19] Հ. Մկրտիչ Վ. Աւգերեան, *Լիակատար Վարք*

ւորաբար վկայաբանական մատենագրութեան վրայ շատ ընդարձակ գրած է, թէեւ շատ վրիպակներ ալ գտնուին, որոնք ընդհանրապէս կ՚արդարանան, եթէ նկատենք գրութեան ժամանակն ու մատենագրական նոր գիւտերն ու հետազօտութիւնները: Մեծ արդիւնք ունին նոյնպէս Պատկանեան, Էմին, Ջոհրապեան, Լանգլուա[20], Դիւլորիէ[21], Բրոսէ[22] Գուտշմիդ, Տեղա եւ այլք, որոնք մասնական գրութիւններու հրատարակութեան կամ թարգմանութեան առթիւ կցած են մատենախօսական քննութիւններ կամ նաեւ առանձին գրութիւններ նուիրած են այս մասին: Բայց այսպիսի մասնական գրութիւններու քննութիւնները պիտի յիշուին իւրաքանչիւր գրութեան վրայ խօսուած ժամանակը. այստեղ յիշենք միայն

---

եւ Վկայաբանութիւնք սրբոց. ԺԲ. Հատորք. Վենետ. 1810—1814: ԺԱ Հատորին վերջը կայ 96 էջ՝ Ներածութիւն, շատ տեղեկութիւններով վկայաբանութեանց, ճառընտրաց եւ այլ ձեռագրաց վրայ:

20 Լանգլուայի (V. Langlois) Collection des historiens arméniens գրութիւնը նշանաւոր է: Ա. Հատորին սկիզբը դրուած է 31 էջ չորեքծալ ներածութիւն հայ մատենագրութեան վրայ եւ իւրաքանչիւր գրոց սկիզբը ներածութիւններ, ընդ ամէնն 64 էջ 40:

21 Բազմաթիւ գրոց մէջ յիշենք միայն Recueil des historiens des Croisades. I. Documents arméniens. Paris, 1869. 860 էջ:

22 M. Brosset, Collections des historiens arméniens, Saint-Pétersbourg 1874—76. երկու հատորք:

Բազմավէպ[23], Եւրոպա[24], Հանդէս Ամսօրեայ[25], Փորձ[26] եւ այլ ուսումնաթերթերը: Յիշենք վերջապէս Իսավերտենցի անգլիերէն լեզուաւ հրատարակած գրութիւնը Հայոց Պատմութեան, Եկեղեցւոյ եւ Մատենագրութեան վրայ[27]:

Երկրորդ կարգի գրութիւններ ալ, այսինքն այնպիսիններ, որոնց նիւթն է ուղղակի հայ մատենագրութեան պատմութիւնը, չեն պակսիր թէեւ, բայց եւ ոչ ալ բազմաթիւ են եւ այնպէս՝ որպէս կը բաղձացուէր: Առաջին անգամ, ինչպէս կը կարծենք, Վենետիկի Մխիթարեանց Արքեպիսկոպոս Արբահայրը հրատարակեց իտալերէն լեզուով այսպիսի գրութիւն մը Պատկեր մատենագրութեան պատմութեան Հայաստանի[28] անուամբ եւ արդէն քանի

23 Բազմավէպ, ազգային բարոյական եւ բանասիրական. Վենետ. 1843—1891, մանաւորապէս Բ. Շրջան (1873—1891):

24 Եւրոպա, Շաբաթաթերթ, Վիեննա, 1847—1857 (եւ Բ. Շրջան, 1858—1863):

25 Հանդէս Ամսօրեայ, բարոյական, ուսումնական, արուեստ գիտական. Վիեննա, 1887—1891:

26 Փորձ, ազգային եւ գրականական հանդէս, Տփղիս. 1876—1881:

27 Issaverdens, Dr. James, Armenia and Armenians. A Sketch of its Geography, History, Church and Literature. Venice 1874. 700 էջ 12°:

28 *Mons. Placido Sukias Somal*, Quadro della Storia Letteraria di Armenia. Venezia, 1829, 240 էջ 8°:

*մը տարի յառաջ ալ հանած էր* Պատկեր գրութեանց թարգմանելոյ ի հայերէն լեզու ի հին ժամանակս[29] *նոյնպէս իտալերէն*: *Այս գործն առաջնորդ եղաւ գերմանացի* Նոյման *գիտնականին գերմաներէն լեզուով հրատարակած գրութեան՝* Փորձ Հայոց Մատենագրութեան Պատմութեան[30]: *Գերմանացի գիտնականին գործին յարգն այն է՝ որ իւր էջերուն մէջ հաւաքած է շատ մ'անծանօթ եւ չատերուն անմատչելի գրութիւններու եւ հատուածներու անունները, որոնք եւրոպական լեզուով մը հրատարակուած են անցեալ դարուն վերջերն եւ այս դարուս սկիզբները: Քանի մը տարի վերջը գաղղիացի* Լըվայեան դը Ֆլորիվալ *գրեց իւր* Պատմութիւն Հայոց եւ Մատենագրութիւն *գիրքը*[31] *որ կրկին տպագրուեցաւ եւ որուն մէջ կը խօսի Մխիթար Աբբահօր գործերու, Մխիթարեանց, Հայաստանի աշխարհագրութեան, Հայոց պատմութեան վրայ եւ կը յարէ Պատկեր մատենագրութեան Հայոց նորոգումն հայ մատենագրութեան եւ տեղե-*

29 Նոյմն, Quadro delle opere tradotte anticamente in armeno. Venezia, 1825.

30 *K. Fr. Neumann,* Versuch einer Geschichte der armenischen Litteratur, nach den Werken der Mechitharisten frei bearbeitet. Leipzig, Barth, 1836, XII, 308 էջ 8⁰: *Գրեց յաւելուած մ'ալ.* Beiträge zur Armenischen Litteratur, I. Lieferung, München, 1849.

31 *Le Vaillant de Florival,* Histoire d'Arménie, littérature arménienne. Venise 1841, 120 էջ 16⁰: 2e Édition. *Ibid,* 1856, 128 էջ 12:

կութիւն Հայադէտներու վրայ։ Նման գրութիւն մ՚ալ ունի Դիւլորիէ [32]։

Առաջին անգամ քննական մատենագրութեան պատմութիւն մը սկսաւ հրատարակել Հ. Յովսէփ Վ. Գաթըրճեան [33], որ դժբախտաբար թերի մնաց եւ առաջին տետրը միայն լոյս տեսաւ։ Մատենագրական երկու ընդարձակ Ցուցակ հրատարակեց ռուսերէն լեզուով Ս. Նազարեանց [34]։ Բազմավէպի ԺԹ եւ Ի հատորներուն մէջ դրուեցաւ Պատկեր մատենագրութեան Հայոց [35], այսինքն լոկ ցուցակ մը գրքերու եւ թարգմանութիւններու, առանց տեղեկութեան։ Մատենախօսական ցուցակ հրատարակեցին Ցենքէր գերմանացին [36] եւ Դուայտ անգլիացին [37],

---

32 Հայերէն թրգմ. Եւրոպա, 1854. Թ. 24, 25 եւ 27։ Վերնագիրն է, Պարոն Տիւլորիէին՝ Հայոց վրայ գրածը։

33 Հ. Յովսէփ Վ. Գաթըրճեան, Պատմութիւն Մատենագրութեան Հայոց։ Հտր. Ա. Անդիր ԺԱ. Վիեննա, 1851, 62, էջ $8^{0}$։

34 1) Հարեւանցի Հայեացք հայկական գրականութեան վրայ մինչ ԺԳ. դար. 2) Տեսութիւն հայկական գրականութեան նոր ժամանակի մէջ։ Առաջինը 50, երկրորդը 158 էջ։ Հմմտ. Փորձ, 1880. I, 14։

35 Բազմավէպ, ԺԹ (1861), էջ 81, 64, 96, 159, 191, 224, 293, 325, 357. Ի (1862), էջ 32, 84, 96, 128, 160, 192, 224, 256, 288, 320։

36 J. Zenker, Die Litteratur der Orient. Christen. Leipzig, 1861, էջ 185—212 եւ էջ 213—219, առաջինն ինքնագրութեանց, երկրորդը թարգմանութեանց վրայ։

37 Catalogue of all works known to existe

տեղեկագիր մ'ալ կարդաց հայկական ուսմանց յառաջադիմութեան վրայ՝ Դիւլորիէ[38]: Նշանաւոր գործ մըն է Ք. Պատկանեանի[39] գաղղիերէն լեզուով գրած Ցուցակ հայկական մատենագրութեան[40], Դ դարէն մինչեւ ԺԷ. դարու կէսը: Իրենն է նոյնպէս համառօտ բայց հետաքրքրական «Տեսութիւն հայ պատմական գրականութեան[41]» եւ «Հայ պատմագիրների երկասիրութեանց ցուցակը[42]»: Յիշենք դաղղիացւոյն Հայաստան եւ Հայք[43] գրութիւնը, որուն վերջերը գրուած է համառօտ պատմութիւն հայ մատենագրութեան, եւ աւելի եւրոպացի հայագէտներու վրայ, նոյնպէս հայագէտ Հիւբշմանի մէկ ճառը, զոր կարդաց լեզուաբանական ընկերութեան համարատուութեան ժա–

---

in the armenian language of a date earlier than the seventeenth century. By *H. G. Dwight*, Journal of american oriental Society, III Vol. Numb. II, New York.

[38] *M. Dulaurier*, Progrès des études arméniens (*մասն* Progrès des études relatives à l'Egypte et à l'Orient, Paris, 1867 (*գրութեան*), *էջ* 151—173): *Հրատարակուեցաւ նաեւ ի* Բազմավէպ, 1873, *էջ* 254 ff:

[39/40] *K. Patkanoff*, Catalogue de la littérature arménienne depuis le commencement du IV siècle jusque vers le milieu du XVII. Petersbourg 1860:

[41] Փորձ, 1880, I, *էջ* 1—26:

[42] Փորձ, 1880, I, Յաւելուած, *էջ* 1—40:

[43] L'Arménie et les Arméniens. Paris, 1883":

*մանակ*՝ Հ. Սվիտ[44] *եւ Միանսարեանցի*՝ Մատենագրութիւն Կաւկասեան եւ Անդրկաւկասեան[45] *մեծ գործը, որ ցուցակ է այս նիւթերու վրայ եղած գրութիւններու եւ յօդուածներուն, եւ որուն առաջի հատորը միայն լոյս տեսած է, իսկ երկրորդը հեղինակին մահով թերի մնացած, եւ վերջապէս* Ֆելիքս Նէվ *բելգիացի հայագէտին* Քրիստոնեայ Հայաստան եւ իր մատենագրութիւնը[46] *անուամբ գործը, որուն սկիզբը* 45 *էջ՝ է համառօտ պատմութիւն Հայոց մատենագրութեան, յաջորդ* 200 *էջերը քննութիւն եւ թարգմանութիւն ինչ ինչ հայ շարականներու եւ* 40 *էջ ալ* (248—286) *Հայկական Հայրախօսութիւն, այսինքն Գրիգոր Լուսաւորչի, Գրիգոր Նարեկացւոյ եւ Ներսէս Շնորհալւոյ կենսագրութիւնն ու մատենագրութիւնները: Ապա կը յաջորդէ պատմական մաս մը, այսինքն «գլխաւոր յիշատակարաններ Հայաստանի պատմական մատենագրութեան», որ է Հայոց պատմագիրներու վրայ համառօտ տեսութիւն մը, որուն կցուած է Եղիշէի, Յովհաննէս Կաթուղի-*

[44] Report on Armenia, By *Prof. Hübschmann (H. Sweet, Esq.)*. Transactions of the Philol. Society, London 1877—1879.

[45] *M. Miansariantz*, Bibliographia Caucasica et Transcaucasica. Petersb. 1874. I, XLII, 804 *էջ*, *մանաւանդ էջ* 424—561:

[46] *Félix Nève*, L'Arménie Chrétienne et sa littérature. Louvain, 1886, VII, 403 *էջ* 8⁰: *Քննդ*. Հանդէս Ամս. *Ա*. (1887), *Թ*. 2, Արաքս, *Բ. Տարի*, *Գիրք Ա*. (1889), *էջ* 176:

*կոսի, Մատթէոս Ուռհայեցւոյ կենսագրութիւններն ու մատենագրութիւնները, ապա «Հայկական աղբիւրները Մոնկոլներու պատմութեան» եւ իբրեւ յաւելուած «Պատմագրութիւնն առ Ասորիս եւ Հայս»: Նոյնպէս յաւելուած մը նկատուելու են նոյն հեղինակին «Հայկական քանի մը նոր հրատարակութիւններ*[47]*» տեսորը: Երկու տարի յառաջ լոյս տեսաւ ամերիկացի* Իլրոն *գիտնականի Յօդուածը կամ գրութիւնը* Հայոց մատենագրութիւն *անուամբ*[48], *որ ինծի ծանօթ է* Արեւելեան Մատենագիտութենէն, *զոր կը հրատարակէ* Ա. Միւլլեր[49]: *Այս ամերիկացւոյն գործը Փիլադելփիա թերթի մը մէջ տպուած է եւ Ֆէլիքս Նէվի (յիշեալ) «Քրիստոնեայ Հայաստան եւ իւր Մատենագրութիւնը» եւ Սոմալ Սուքիաս Արքահօր «Պատկեր Հայաստանի մատենագրու-*

---

47 *Նոյնը*, Quelques récentes publications de littérature arménienne (*հանեալ յուսումնաթերթէն Muséon*, T. VII N. 3 Juin 1888.) Louvain, 1888. *Թրգմ. ի հայ.* Հանդէս Ամսօրեայ, *Բ.* (1888). *Թ.* 8, *էջ* 135 ff.

48 *Mc. Elrone, Hugh*, The Litterature of Armenia. Sunday School Times (Phil.). Aug. 18, 1888. *էջ* 515:

49 *Orientalische Bibliographie*, unter Mitwirkung der Herren Dr. A. Bezzenberger, Dr. H. L. Strack etc. herausgegeben von Dr. *A. Müller*, Berlin, II. Jahrgang (II. Band) 1888, Heft IV. *էջ* 339, *Թ.* 5555. — *Այս գործիս մէջ հայերէն գրոց ցուցակը կը հայթայթէ Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան:*

թեան դպրութեան» գրութիւններու վրայ հիմնուած է։ Կը թողում յիշել ուրիշ մանր տետրակներն ու Ցօղուածները։

Մինչեւ հիմայ յիշուածներէն միայն երկու երեքը նշանաւոր գրութիւն կրնային համարուիլ, որոնք առաւել կամ նուազ ընդարձակութեամբ կը դնեն մեր առջեւը հայ մատենագրութիւնը, մնացեալները մեծ մասով ցուցակներ եւ ցուցակնման Ցօղուածներ են։ Այս ամէն պարագաները հարկաւ կը ստիպէին հայ բանասէրները քանի մը փորձեր ալ ընելու աւելի հիմնովին քննելու այս ճիւղը հայերէն մատենագիտութեան։ Արդեամբ ալ նոր փորձ մ՚ըրաւ արեւելեան հայազգի գիտնական մը՝ Ստեփանոս Պալասանեան եւ սկսաւ հրատարակել իւր Պատմութիւն Հայոց գրականութեան գործը[50], բայց այս փորձն ալ թերի մնաց եւ լոյս ընծայուեցաւ միայն առաջին հատորը՝ Բանաւոր գրականութիւն, այսինքն Հայ «Անգիր ժամանակ»ի գրականութիւն. այս կողմանէ բախտակից եղաւ այս գիրքը իրմէ 14 տարի յառաջ լոյս տեսած նման երկասիրութեանը[51]։ Ուրիշ փորձ մ՚ըրաւ Վեննետիկի Մխիթարեանց նշանաւոր անդամներէն մին՝

---

[50] Ստեփանոս Պալասանեան (փոստուշանցի), Պատմութիւն Հայոց գրականութեան. Հտր. Ա. Բանաւոր Գրականութիւն։ Տփղիս, 1865. տպ. Ներսէսեան դպրոցի, էջ 259, 12°։

[51] Հմմտ. Հ. Յ. Գաթըրճեան, Անգիր ժամանակ. Վիեննա, 1850։

Հ. Գարեգին Զարբհանալեան *իւր եռահատոր ընդարձակ գործով որուն առաջին հատորը, որ նուիրուած էր Հայոց* հին մատենագրութեան, *լոյս տեսաւ* 1865*ի եւ երկրորդ տպագրութիւն մ'ալ ունեցաւ* 1886*ի*[52]: *Այս գրութեան նիւթն է Հայոց* ինքնագիր *մատենագիրները (Դ—ԺԳ Դար) նկատել մանրամասն, եւ ի սկզբան համառօտ պատրաստութենէ յետոյ կը խօսի «Հայկական նշանագրերու* (*էջ* 10—57), *«Հայ գրչագիրներու»* (*էջ* 57—84), *«Հայերէն լեզուի»* (*էջ* 84—115), *«Գողթան երգերու»* (*էջ* 116—134) *վրայ եւ ապա կը սկսի* դար առ դար *մատենագիրներու վրայ խօսիլ: Արդէն յընթացս մեր գրութեան շատ անգամ առիթ կ'ունենանք տեսնելու այս գործին արժէքը, միայն կը կանխենք կ'ըսենք որ հանդերձ իւր շատ մը թերութիւններով՝ այն արդիւնքն ունի որ միմիակ ամբողջական (իբր* 3000 *էջ) գործ մըն է Հայոց մատենագրութեան պատմութեան ճիւղին մէջ: Բաղձալի է որ շատ մը թերութիւններն ու սխալ եւ հնացեալ կարծիքները հին տպագրութենէ նորին ալ չանցնէին, բայց թէ այս բաղձանքը դեռ լիովին չէ լրացած՝ գոնէ նոյնը կատարուէր* երկրորդ հատորին *նկատմամբ, որ*

52 Հ. Գարեգին վ. Զարբհանալեան, *Պատմութիւն հայերէն դպրութեանց ի պէտս ուսման ազգային վարժարանաց: Վենետիկ Ս. Ղազար:* — Հատոր Ա. *Հին Մատենագրութիւն Հայոց, Վենետիկ,* 1865. *Բ. Տպագր.* 1886. *ԼԲ եւ* 795 *էջ* 8°:

Հայոց նոր մատենագրութեան վրայ[53] կը խօսի եւ շատ աւելի թերի ու սխալներով լի է[54]: Շատ ուշ հրատարակուեցաւ գործին երրորդ հատորը, որ պիտի խօսէր Հայոց թարգմանութեանց վրայ[55]: Այս վերջինս շատ աւելի կարեւոր գործ մըն է յինքեան, վասն զի անթիւ անհամար թարգմանութիւն ունինք, որոնք յանուանէ լոկ ծանօթ են մեզ եւ միայն այն կրնար մեզ սակաւ լոյս տալ այն թաքուն գանձերուն նկատմամբ, որ ձեռագրաց հարուստ հաւաքածոյ մը առ ձեռն պատրաստ ունի եւ դիւրաւ կրնայ գործածել: Այս նկատմամբ սոյն գրութիւնը մեծ արժէք ունի, որուն մէջ այբուբենական կարգով դրուած եւ գրուածներու լոկ վերնագիրները եւ սկզբնաւորութեան տողերը եւ շատ ցանցառ աւելի մանրամասն տեղեկութիւններ գրուած են նոյն գրութիւններուն,

---

53 Նոյն, Հատոր Բ. — Նոր Մատենագրութիւն. Վենետիկ, 1878:

54 Այս գործիս երկու հատորներու վրայ ընդարձակ քննադատութիւն մը գրած է «Գրիչ» ի թերթին Փորձ, 1880, V—VI, էջ 174—215, ուր մի առ մի դրուած են գրքին առաւելութիւններն ու պակասութիւնները, թէեւ քննադատը շատ բան ուրիշ ակնոցով դիտած է:

55 Հ. Գարեգին վ. Զարբհանալեան, Մատենադարան Հայկական թարգմանութեանց նախնեաց (Դար Դ—ԺԳ): Վենետիկ. 1889, ԼԱ. եւ 783 էջ 8⁰: Ցաւալի է որ թարգմանութեանց մասը մինչեւ ԺԳ դար միայն շարունակուած է, մինչդեռ յաջորդ դարերու գործերն ալ՝ լաւ թէ գէշ՝ գոնէ պէտք է ծանօթ ըլլայ:

ճառերուն լեզուին, բովանդակութեան եւ այլ հանգամանաց վրայ: Տեղ տեղ նաեւ ձեռագրերու վրայ համառօտ տեղեկութիւններ եւ յիշատակարաններ հաղորդուած են. իսկ գրքին առաջին մասը (էջ 1—272) ամենեւին համեմատականութիւն չունի յաջորդ մասին հետ, որ լոկ ցուցակ մըն է. վասն զի պատասութենէ ետքը (էջ 1—8) կը դրուի Ս. Գրիգոր Լուսաւորիչ (էջ 8—20), որուն մէջն է նաեւ Թադէի վկայաբանութիւնը, ապա ստանուն Յակոբայ Մծբնացւոյ ընծայուած (Հրահատ Զգօն Պարսկին «Զգօն») գրքին վրայ քննութիւն մը (էջ 20—46), Զենոբ Գլակ, Փաւստոս Բուզանդ (էջ 46—53) Եւսեբիոս Կեսարացի (էջ 54—57) եւ ապա «Աստուածաշունչք Գիրք» (էջ 57—245), որ ուրոյն ընդարձակ գրութիւն մըն է եւ վերջապէս «Եկեղեցական Պաշտամանց գիրք» (էջ 245—272): Այս ամէն թերութիւններով հանդերձ՝ միշտ անդին արժէք ունի գրութիւնը, որ միակն է դեռ իւր ճիւղին մէջ, եւ այն այնպիսի ճիւղի մը մէջ, որուն մէջ անհնար է առ այժմ բաղձացածին չափ կատարեալ գրութիւն մը հրատարակել, ինչպէս արդէն կանխեցինք ըսինք (§ 5). եւ շատ իրաւամբ ըսած է հեղինակը թէ այսպիսի գրութեան մէջ «կատարելութիւնը երկասիրողին կամքէն կախում չունի[56]»: Նոր մատենագրութեան համար մեծ ծառայութիւն մըն

56 Անդ. Յոջբ. էջ ԺԵ։

*է հեղինակին ուրիշ մէկ գործը* Հայկական Մատենագիտութիւն[57]։

*Անուանց եւ գրոց լոկ ցուցակ մ՚է Եղիշէ Վ. Դուրեանի*[58] *յօրինած դասագիրքը Հայոց մատենագրութեան պատմութեան։ Ռամկական մատենագրութեան համար մեծ արդիւնք ունեցաւ Հ.* Ղեւոնդ Վ. Յովնանեանի Հետազօտութիւնք Նախնեաց Ռամկօրէնի[59], *որ երեք մաս ունի. Ա) Ներածութիւն. Բ) Ռամկօրէն մատենագիրք. Գ) Ռամկօրէն լեզու։ Յիշենք վերջապէս Կ. Տիւրեանի Յօդուածները «Ռուսահայոց Գրականութիւն» անուամբ*[60] *եւ Հ. Գ. Գ.ի* Պատմութիւն Հայ լրագրութեան[61]։

*Այս գրութիւնները տպագրութեամբ լոյս տեսած են։* Անտիպ *են հետեւեալները. 1. Հ.* Յ. Գաթըրճեանի *«Սրբազան Պատարագամատոյցք» գործը, որ Հայոց եկեղեցական*

---

57 Հ. Գար. Վ. Զարբհանէլեան, *Հայկական Մատենագիտութիւն, Ցուցակ տպագրութեան գիւտէն մինչեւ առ մեզ եղած հայերէն հրատարակութեանց։ Վեննա.* 1883, *ԼԲ եւ* 734 *էջ.* 8⁰։

58 Եղիշէ Վ. Դուրեան, *Պատմութիւն հայ մատենագրութեան։ Կ. Պոլիս,* 1885, *Ը եւ* 118 *էջ,* 8⁰։

59 *Հրատարակուած* Հանդէս Ամս. *Բ, էջ* 5, 17, 33, 77, 104, 123, 155, 168, 213։ *Գ, էջ* 1, 21, 57, 81, 107, 129, 189, 212, 237, 265. *Դ. էջ* 33, եւ ուրոյն՝ *Վիեննա,* 1891։

60 Հանդէս Ամս. *Ա, էջ* 85, 115. *Բ, էջ* 11, 21, 125, 136. *Գ. էջ* 6, 25 *եւ* 61։

61 Հանդէս Ամս. *Ա. էջ* 39, 57, 73, 88, 118, 149, 190։ *Բ. էջ* 57, 106, 186, 216։ *Գ. էջ* 4, 87, 153, 185. *Դ, էջ* ···

պաշտամանց գրքերու վրայ է եւ շատ հետաքրքրական եւ որմէ ճաշակ մը լոկ հրատարակուեցաւ[62]. 2) Նոյն հեղինակին՝ «Կանոնագիրք Հայոց» նշանաւոր գործ մը. 3) Հ. Քերովբէ Վ. Խապէճեանի «Ուսումն Հայ Դպրութեան (Հայկաբանութեան), որ երկու մաս ունի՝ ա) Պատմութիւն հայ լեզուի եւ մատենագրութեան, քննադատութեամբ իւրաքանչիւր ժամանակի լեզուին փոփոխութեանց եւ բ) Նկարագիր դասական հայերէն լեզուի եւ Մասնական քննութիւնք լեզուի եւ ոճի եւ այլ տեղեկութիւններ Ոսկեդարու մատենագիրներու վրայ:

Այսչափ է մեզի ծանօթ հայ մատենագրութեան վրայ ճառող գրութիւններէն, որոնց մէջ յուսանք թէ բոլորովին աննշանակ տեղ մը չի գրաւեր մեր այս երկասիրութիւնը:

## § Ց. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Հին Հայաստանի մտաւորական զարգացումը՝ ուսումն եւ մատենագրութիւնը՝ համեմատելով իրեն դրացի դասական հնութեան մէջ նշանաւոր ազգերու — Յունաց, Լատինացւոց եւ նաեւ Ասորւոց — մտաւորական կրթութեան աստիճանին ու մատենագրութեան հետ՝ շատ աղքատ է եւ մխա-

---

62 Հանդէս Ամս. Գ. (1889), էջ 24 (Ագաթանգեղոս) եւ 40 (Բուզանդ): Նոյն հեղինակին է «Հայոց չորս պատմագրաց ժամանակը». Հանդէս Ամս. Ա. (1887) էջ 9:

կողմանի: Ցիշեալ ազգերու մատենագրութիւնն իրաւամբ արժանի է դասական անուան. իւր երկասիրութեանց ներքին արժէքը, հանճարն ու հմտութիւնն ու նուրբ ճաշակը եւ ինքնագիր ոճը գլխաւոր նկարագիր են հնութեան այս յիշատակարաններու, մինչդեռ մեր մատենագրութեան շատ դոյզն մասն ունի այս յատկութիւնները, մնացեալ անթիւ բազմութիւնը լոկ թարգմանութիւն կամ նմանողութիւն է օտարներու: Մասնաւոր մտադրութեան պէտք մը չկայ նշմարելու համար որ այն մատենագիրներն առաւել բարձր դիրք մ'ունին մեր մատենագրութեան մէջ, որոնք առաւել մերձուստ ազդուած եւ կրթուած են օտար, գլխաւորաբար յունական կրթութեամբ: Զարմանալի չէ այս մեզի համար, մինչ նաեւ Լատինական չքնաղ հին մատենագրութեան վրայ նոյն ստուերը կը նշմարուի, այն տարբերութեամբ որ երբ Հայաստան արթընցաւ իւր թմրութենէն եւ թողուց իւր «անիմաստասէր բարք»ը եւ «անկարութիւն ողւոյն բանականի» եւ «անսիրելութիւն իմաստութեան երգարանաց բանաւորաց», եւ փութաց յունական ուսմամբ ալ ասորական կրթութեամբ պատուաստել իւր նոր սերունդը, — այն ժամանակ յունական դպրոցներ, ի բաց առեալ միայն սակաւ ժամանակ մը աղեքսանդրեանը, կորսնցուցած էին իրենց նախկին չքեղութիւնը եւ մեծ անկածութեան մէջն էին, այնպէս որ յու-

նական իմաստութեան համբաւը կանգուն պահողն էր միայն Ս. Հարց կամ քրիստոնէական մատենագրութիւնը, որ Դ. եւ Ե. դարերու մէջ իւր բարձրակէտը հասած էր։ Յունական գիտութեան այս անկածութեան ժամանակ կրթուող Հայերը բնականապէս իրենց մտադրութիւնն ուղղած էին տակաւին ծաղկող Ս. Հարց մատենագրութեան. եւ ահա այս է մեր մատենագրութեան միակողմանիութեան գլխաւոր պատճառներէն մին[63]։

Եթէ նկատենք հայ մատենագրութեան ծագման սկզբնապատճառները, կը համոզուինք որ այս միակողմանիութիւնն ու աղքատութիւնն ի հարկէ արդիւնք մ'էր այն սկզբունքին որմէ կը բղխէր։ Հայ ազգը «իրնէ երկհակ» Հռոմէական եւ Պարթեւական (յետոյ Սասանական) մեծամեծ պետութեանց մէջ[64], ի սկզբան աւելի Պարթեւաց կողմը կը միտէր[65]. սակայն իրերու այս կերպարանքը փոխուեցաւ, երբ քրիստոնէութիւնը տիրող կրօնք եղաւ Հայաստանի։ Հայերն անվստահ Սասանեանց առաւել զօրութեան դէմ՝ սկսան միտիլ Յունաց կողմը որ կրօնակից էին, այնպէս Հայաստան իբրեւ «հին» եւ «հաւատարիմ» դաշնակից հռոմէական տէրութեան կը յիշուի յա-

63 Խորենացի, Պատմութիւն Հայոց, տպ. Վենետիկ 1843, Գիրք Ա. գլ. Գ։

64 Տակիտոս, Տարեգիրք, Բ, գլ. ժգ։

65 Տակիտոս, ԺԳ. գլ. խդ։

*ճախ*[66], *թէեւ սակաւ չէին նաեւ պարսկասէրներ, այնու մանաւանդ որ Հայերն ու Պարսիկները եթէ ոչ արխնակից՝ գէթ նման էին Բարքով եւ սովորութեամբ*[67], *այնպէս որ նոյն իսկ հինգերորդ դարուն վերջերը — քրիստոնէութեան ու մոգութեան աւերիչ պատերազմներէն ետքն ալ — դեռ կը գտնենք Հայեր սիրող պարսկական եւ հեթանոսական գրոյցներու*[68]: *Կը գգային Հայերը որ մեծ տհաճութիւն կը պատճառէր սասանեան արքունիքին՝ Հայոց Յունաց եկեղեցւոյն հետ ունեցած սերտ կապը*[69], *որոնք արդէն մեծ ճիգով հետամուտ էին Հայերը նիւթապէս եւ կրօնապէս ընկղմել Պարսից մէջ, եւ որով նաեւ մերձակայ ազգերը՝ որոնց բախտն ընդհանրապէս կապուած էր Հայոց հետ*[70]: *Արդէն յունարէն ուսանիլն արգիլուեցաւ ժամանակ մը, յու–*

66 Ամիանոս, *ԺԳ*, 5. *Ի*, 11 *եւ այլուր*: — Յուլիանոս, *Ա. ճառ առաջի Կոստանդեայ կ՚ըսէր.* *Ἀρμένιοι, παλαιοὶ σύμμαχοι.* — Եւսեբ. *Եկեղ. Պատմ. Գիրք Թ. գլ. ը*: — Բուզանդ, *Դ. գլ. խ*: — Եղիշէ, *Գ*, *էջ* 123:

67 Բուզանդ, *Դ. գլ. խգ. եւ այլուր յաճախ*:

68 Խոր. *Ա. էջ* 62, *եւն*: *Հմմտ.* Բուզանդ, *Գ*, *գլ. ժգ. եւն*:

69 Ղազար Փարպեցի, *տպ. Վենետիկ*, 1873, *էջ* 344—345: *Հմմտ. ի մէջ այլոց* Բուզանդ, *Ե*, *գլ. իթ*: Խորենացի, *Գ. գլ. լգ. ծգ. կա. եւն*:

70 Ղազար Փարպեցի, *էջ* 118—119. *«Յորժամ Հայք սերտիւ մեր լինին, Վիրք եւ Աղուանք այնուհետեւ մեր իսկ են»*:

նական գրքեր այրուեցան[71], եւ ասորի ազգեցութիւնն անհետաւ, որուն կը նպաստէին Սասանեանք յօգուտ իրենց[72] այլ եւ սասանեան տոհմէն թագաւոր դրուեցաւ Հայոց, «զի մարթ լիցի զնոսա եւ ի դէն մազդեզութեանց սաղապեցուցանել[73], եւ եթէ յիշենք Բրքիշոյի, Շմուէլի եւ նմանեաց դէպքերը[74], դժուար չէ իմանալ որ Մեծն Սահակ եւ Մեսրոպ եւ ուրիշներ կրնային կանխաւ զգալ Սասանեաններու այս քաղաքագիտութիւնը եւ կասկածիլ թէ գուցէ օր մը նաեւ ասորականն եւ այլն ամէնն արգիլուէր, որպէս զի այսպէս դիւրաւ ընտելանայ հայ ազգը զրադաշտական օրինաց: Այս ամէնը կը ստիպէր Հայերը մէկ կողմանէ հեռացնել ազգն ըստ կարելւոյն Պարսից շօշափմանէ՝ հիմն դնելով ազգային դպրութեան մը[75] եւ միւս կողմանէ թարգմանել ըստ կարի բոլոր Հայրերու մատեանները, որոնք կրնային տածել Հայոց մէջ քրիստոնէական ոգին եւ ապահովել իրենց կրօնքն, եթէ նաեւ կտրուէր որեւէ հաղորդակցութիւն Յունաց եւ Ասորւոց հետ: Այս է բուն պատճառ ծագման

71 Խոր. Գ. գլ. լկ եւ ծդ:

72 Ղազար Փարպեցի, էջ 35, 36, 43, եւն. Խոր. Գ. գլ. ծդ. «Զտային պարսիկ վերակացուքն յոյն ուսանել դպրութիւն..., այլ միայն ասորի»:

73 Խոր. Գ. գլ. ծե:

74 Խոր. Գ, գլ. ծդ:

75 Եթէ քաջ միտ դնենք այս եղած է նաեւ գլխաւոր նպատակ մեր հինգերորդ դարու պատմչաց, բայց մանաւանդ Մովսէսի Խորենացւոյ: Բայց առոր վրայ ետքը:

մեր մատենագրութեան, բայց միանգամայն անոր միակողմանիութեան, այսինքն այն յատկութեան որ մեր մատենագրութեան մեծ մասն Ս. Հայրերու գործերուն եւ այլ կրօնական գրութիւններուն թարգմանութիւններ են, եւ հետեւաբար նաեւ աղճատութեան = թէ յաջողեցաւ այս հնարքը՝ կը վկայէ պատմութիւնը, եւ բաւ է յիշել միայն Սասանեանց գրեթէ դար մը տիրելէն ետքն ալ կը տեսնենք որ նաեւ մեր ազգին մեծամեծները պէտք կ՚ունենան թարգմանի Պարսից աւագաց հետ խօսելու[76]:

Մեր մտաւոր զարգացման աղքատութեան իբրեւ պատճառ կը բերուի նաեւ մեր քաղաքական թշուառ հանգամանքները, անընդհատ պատերազմները նաեւ բռնութիւն ուսման, այրուեստ գրոց[77] եւ այլն: Զարմանալին այն է որ շատ հին է այս ցուցումը եւ արդէն Խորենացի կը յիշէ այս եւ կը ջանայ մերժել ի մէջ բերելով թէ ունեցած ենք նաեւ խաղաղութեան ժամեր եւ գիր (լեզու) Պարսից եւ Յունաց, որով կային իւր ժամանակն

---

76 Հմմտ. ի մէջ այլոց՝ Ղազար փարպեցի, տպ. Վենետ. 1873, էջ 298, 345 եւն:

77 Խոր. Գ, գլ. ԾԴ. տպ. Վենետ. 1843, էջ 224. «Եւ զորս միանգամ գիրս գտանէր (Մեսրովբ)՝ այրէր եւ հրաման տայր, մի՛ ուսանել զդպրութիւն յունարէն, այլ պարսիկ. եւ մի՛ ոք իշխեսցէ յայն խօսել կամ թարգմանել. այսպիսի ինչ պատճառաւ, զի ամենեւին մի՛ լիցի Հայոց ընդ Յունաց ծանօթութիւն եւ հաղորդութիւն մերոց. այլ ճշմարիտ՝ խափանել զքրիստոնէութեան ուսումն»:

խակ «անիրաւ գրուցաց մատեանք[78]»: Սակայն որչափ ալ ճշմարիտ է թէ ժողովուրդ մը, որ գրեթէ անընդհատ պատերազմներու, դերութեան, աւերածի եւ աւարառութեան ենթարկուած է, հարկաւ առաւել օրապահիկը գտնելու պէտք է զբաղիլ, եւ չունի շատ մեծ դիւրութիւն բարձրագոյն գաղափարներ զարծարգելու, — բայց եւ այնպէս անիրաւ չ'երեւար, երբ ազնիւ ծերունի հայ պատմագիրը կը դարոյէ հայ աւագանին իւր «բանաւոր երգարանաց» ունեցած «անսիրելութեան» համար, եւ գիտենք որ շատ չեն մեր մէջ Վռամշապուհներ, Սահակներ եւ այլ նման մեկենասներ, զոր կ'ողբար արդէն ԺԵ. դար յառաջ ծերունի պատմիչը[79], մինչդեռ յայտնի է որ մատենագրի մ'անհրաժեշտ է

---

[78] Խոր. Ա, գլ. գ. «Այլ ասիցէ ոք. վասն զի ոչ լինելոյ գիր եւ գպրութիւն ի ժամանակին, կամ վասն զի պէսպէս պատերազմացն, որ կուռ զմիմեանց զկնի անհետ ի վերայ գային: Այլ ոչ արդարեւ այսօքիկ կարծեցեալ լինի. քանզի գտանին եւ մինչոյց լեալ պատերազմացն, եւ գիր Պարսից եւ Յունաց որովք այժմ գիւղից, գաւառաց եւս եւ իւրաքանչիւր տանց տանձնականութեանց, եւ հանուրց հակառակութեանց եւ դաշանց այժմ առ մեզ գտանին անիրաւ գրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեպհական ազատութեանն պայազատութիւն: Այլ ինձ թուի, որպէս այժմ եւ առ հինսն Հայաստանեայց լեալ անսիրելութիւն իմաստութեան եւ երգարանաց բանաւորաց»:

[79] Խոր. Գ. գլ. կը. (տպ. 1843, էջ 274). «Ո՞վ այսուհետեւ զմերս յարգեսցէ զուսումն, ո՞վ ուրախասցի ընդ յառաջադիմութիւն աշակերտին... ո՞վ զմեզ սփոփեսցէ գովելով, եւն»:

չատ անգամ նիւթական ալ խրախոյս ունենալ մեծերէ :

Վերջապէս մեր մատենագրութեան աղքատութեան մեծ պատճառներէն մին ալ է կրօնական խնդիրն ու Հայոց եկեղեցւոյն յունական եւ ուրիշ եկեղեցիներու հետ ամէն հաղորդակցութիւն կտրելը գլխաւորաբար 451ի Տիեզերական ժողովին առթիւ: Ասով ծնաւ մեր մէջը խորշում մ'որեւիցէ օտարէն եւ օտարին սեպհական իրէն, մինչդեռ օտարներէն է բուն սնունդը Հայոց մտաւոր կրթութեան, առով խափանուեցաւ յոյն լեզուի ուսումն, դադրեցաւ արեւմտեան դպրոցները յաճախելը այն բազմութեամբ եւ այն եռանդով, ինչպէս կ'ըլլար յառաջ, եւ ահա այս ամէնը չատ դէչ ազդեցութիւն ունեցաւ մեր մատենագրութեան վրայ: Վկայ են առոր Ե. եւ ԺԲ—ԺԳ դարերը, որոնք մեր մատենագրութեան ամենանչանաւորն են, եւ որոնց ժամանակ սերտ հաղորդակցութեան մէջ էինք օտարներու հետ. նաեւ Սիւնեաց դպրոցին փայլը յունական լեզուի ուսմամբ յաջողեցաւ, մինչ այն մեծ կրօնական անջատման եւ կզզիացման բուն կէտը՝ Զ. դարը՝ մեր մատենագրութեան մէջ ճչմարտիւ ամուլ դար մըն է եւ անմատենագրութեան ժամանակ:

Այսչափս բաւական համարելով հայ մատենագրութեան աղքատութեան ու անոր պատճառներու նկատմամբ, տեսնենք այժմ անոր յարգը:

## § 9. ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՑԱՐԳԸ

Հին Հայաստան որչափ ալ աղքատ ըլլայ մատենագրութեամբ, որչափ ալ համարինք զինքը դատական Յունաստանի եւ Հռոմայ իբրեւ «անարժան ժամանակակից»[80], դէթ կրնանք մխիթարուիլ որ չէ բոլորովին զուրկ ինչպէս որեւիցէ մտաւորական կրթութենէ, նոյնպէս եւ ոչ մատենագրութենէ։ Թողլով նաեւ ի բաց շատ մը խնդրական եւ մթին կէտեր — թէ զոր օրինակ այն «թաղեալ եւ յարուցեալ[81]» նշանագիրք, այն «վաղնջուց գրեալ[82]» եւ «վաղնջուց գտեալ[83]» տառք ունեցա՞ն արդեօք իրական գործածութիւն եւ մատենագրութիւն, թէ այն «անբաւ վրուցայց մատեանք[84]» ի՛նչ տեսակ էին եւ կրնայի՞ն մեր աղքատութեան սփոփանք մ'ըլլալ, եթէ բարեպատեհ դէպք մը ի լոյս հանէր զանոնք «ի ծագաց եւ ի ծակուց ուստեք համապարահին եւ մշտաբողբոջ աշխարհիս Հայոց[85]», ինչպէս նաեւ այն մեհենագրութիւնք Հանւոյ[86] եւ երկարաձիգ Գող—

---

[80] Հմմտ. Սարգիս Սարգիսեանց, Ագուլեցոց բարբառը, հետազօտութիւն, Մոսկուա, 1883. Մասն I, գլ. I, էջ 2։

[81] Կորիւն, տպ. Վենետ. 1833, էջ 9։

[82] Ղազ. Փարպ., էջ 44, հմմտ. եւ էջ 36։

[83] Խոր. Գ. գլ. ծբ։

[84] Խոր. Ա. գլ. գ։

[85] Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան, Յօդք. Գրոց Վաստակոց, հմմտ. Բազմավէպ, Հատոր ԼԵ, (1877), էջ 194։

[86] Խոր. Բ, գլ. ԽԹ. տպ. Վենետ. էջ 126։

թան դիւցազներգութիւնք[87] — թողլով այս ամէնն, ուր առ այժմ առաւել ենթադրութիւններ կրնան տեղի ունենալ շատ անգամ քան ստոյգ տեղեկութիւններ, մենք կը յիշեցնենք միայն մեր Հինգերորդ դարը, որ իրաւամբ մեր մատենագրութեան ոսկեդար անուան արժանի է, ոչ այնչափ գրութիւններու բազմութեամբ կամ երկասիրութիւններու առատութեամբ, որչափ կիրթ ճաշակով, ազնուական վայելչութեամբն ու վսեմութեամբ լեզուին թէ ինքնագրութիւններու եւ թէ թարգմանութիւններու մէջ, դար մը որուն վրայ իրաւամբ կը պարծանանք թէ այնչափ քիչ ժամանակի մէջ, այնչափ քաղաքական աղէտներու եւ պատերազմներու եւ ճղանց մէջ կարելի եղած է այնչափ ինքնագիր եւ թարգմանական գրութիւններ հրատարակել կիրթ ախորժակով եւ գեղեցիկ լեզուով: Ցաւելունք որ մեր ձեռքը հասածը մաս մըն է լոկ այն գրութիւններու զոր համադրեցին մեր նախնիները:

Մեր մատենագրութեան ինքնագրութիւններու մեծագոյն մասը պատմագրութիւններ են, որոնք անով որ տոհմային պատմութեան միակ յիշատակարաններն են, թէեւ ունենան շատ պակասութիւններ, մեզի համար շատ մեծ եւ անգին արժէք ունին: Այս նկատմամբ շատ դոյզն բան կը հաղորդեն մեզի օտար-

87 Հմմտ. խոր. Ա. գլ. լ. — Բուզանդ, Գ. գլ. ժգ. եւն: — Տես վարը § 12 ff:

ները, որոնց մէջ մեր պատմութեան համար ամէնէն յարգելին է դասական հոմէական պատմագրութիւնը մեր Արշակունեաց նկատմամբ եւ մասամբ ալ արաբականն եւ արեւմտեանն Ռուբէնեանց նկատմամբ: — Այս պատմագրութիւնները մեծապէս կը նպաստեն նաեւ դրացի ասիական ազգերու պատմութեան, դիցաբանութեան, աշխարհագրութեան վրայ բաւական լոյս կը սփռեն եւ ասով նաեւ մեծ յարգ ունին Եւրոպայի գիտութեան առջեւ, եւ արդէն բազմաթիւ թարգմանութիւններ եղած են հայ պատմագրերու կամ քաղուածներ անոնցմէ ասիական այս կամ այն ժողովրդին կամ ժամանակի վրայ եւ այսպիսի խնդիրներու քննութեան մէջ ի նկատի կ՚առնուին մինչ նաեւ հայ պատմագիրներ: Եւրոպա ունեցաւ նաեւ գաղափար, բացի՝ մաս մաս թարգմանութիւններու՝ հայ պատմագրերու թարգմանութեան յատուկ մատենադարան մը կազմելու, որուն հիմնադիրն եղաւ գաղղիացին Դիւլորիէ որ Հայկական պատմական մատենադարան կամ Քաղուածոյք հայ պատմագրաց[88] հրատարակելու գաղափարն ունեցաւ, եւ որուն իբրեւ նախաշաւիղ հրատարակեց հատոր մը Հայոց ժամանակագրու-

---

[88] *Bibliothèque historique arménienne*, ou choix et extraits des historiens arméniens, traduits en français . . . par M. Ed. Dulaurier. *Prospectus*. Paris, 1856, 8⁰, 16 pp.

թեան[89] *վրայ, իսկ իր գաղափարին* յայտարարութիւնը *հրատարակեց* Արեւելեան Հանդէսը[90] *եւ արդեամբ հրատարակեց յետոյ Մատթէոս Ուռհայեցւոյն, Ասողկան Թարգմանութիւնը եւ* Առաջին խաչակրաց *վրայ հայ պատմագիրներէն յիշատակարանները: Խորհուրդն աւելի զարգացուց ուրիշ գաղղիացի հայագէտ մը՝* Վիկտոր Լանգլուա *իր երկհատոր* ժողովածոյք հայ պատմագրաց[91] *գործով, որ չշարունակուեցաւ հեղինակին մահուամբ, բայց իր շարունակութիւն կրնանք համարել երրորդ գաղղիացւոյ մը՝ Պետերբուրգի Ճեմարանի անդամ՝ Բրոսէի երկու հատոր թարգմանութիւնները հայ պատմագիրներու: Կը թողում յիշել ուրիշ թարգմանութիւններ ու հետազօտութիւններ Հայ պատմագիրներու վրայ* Սէն-Մարտէնէն[92] *սկսեալ մինչեւ այսօր: — Այս*

---

[89] *Dulaurier Ed.*, Recherches sur la Chronologie arménienne technique et historique, Paris, 1859. XXIV. *եւ* 42 *էջ.* 4°.

[90] *Revue de l'Orient*, de l'Algérie et des colonies. Paris, 1856, février, p. 94—106.

[91] *Victor Langlois*, Collection des historiens anciens et modernes de l'Arménie, publiée en français, sous les auspices de Son Excellence Noubar-Pascha. Paris, 1868: — *Այս գործին վրայ քննադատութիւն տես* Göttingische Gelehrte Anzeigen, 1868, N. 26, *որ հայերէն ալ թարգմանուեցաւ* «Հայկական աշխարհ»*ի մէջ, Տփղիս*, 1868, N. 12, *էջ* 412—419:

[92] *Saint-Martin J.*, Mémoires historiques et géographiques sur l'Arménie, suivis du texte

*ամէնն յայտնի նշան է այն ընդունելութեան եւ յարգին, զոր ունին մեր պատմագրութիւնները: Թէպէտ ոմանք այս պատմագիրներու այս կամ այն նկատմամբ քիչ բանագատ, աւելաբան եւ չափազանցող ամբաստանութին, բայց այս կամ այն հեղինակին յատկութիւնը չենք կրնար նաեւ ընդհանուրին տալ եւ վերջապէս հեղինակի մը մէկ կողմանէ ունեցած թերութիւնը չէ արգելք ուրիշ կողմանէ մեծ յարգ ունենալու: Նաեւ դասական մատենագիրներու մէջ այս կամ այն թերութիւնը կը նշմարուի, բայց անով չի նուազիր այլուստ ունեցած յարգը:*

*Ոչ դոյզն մատադրութեան արժանի են նաեւ մեր ինքնագիր հայրախօսական եւ այլ եկեղեցական ճառերը եւ գրութիւնները նախնեաց, թէեւ կ'ըսենք ցաւով թէ այս մասին մեծ սատուեր ու բիծ կը ձգեն անթիւ անհամար այլ կրօնական հակառակութեամբ, բայց միանգամայն եւ խորին ագիտութեամբ եկեղեցական գիտութիւններու եւ պատմութեան իսկ՝ գրուած շատ մը գրութիւններ հակառակասէր եւ աննշանակ գրչակներու կողմէ:*

*Բազմաթիւ են ըսինք մեր մէջ թարգմանութիւնները: Ասոնք ալ ունին իրենց*

---

arménien de l'histoire des princes Orbelians ... accompagné d'une traduction française et des notes explicatives. Paris, 1818—19. 2 Vols. 8⁰, 450 et 519 pp.

յարգը։ Հայերն ողողելով յունական եւ ասորական դպրոցները թարգմանեցին հայերէնի շատ մը գրութիւններ, բայց կարծես թէ այնպիսի գրքեր թարգմանելու աւելի փոյթ ունեցած են, որոնք յետոյ ժամանակով անհետ եղած են ի սպառ կամ որոնց նախնական բնագրէն հազիւ քանի մը, պատառիկներ հասած են, եւ այսպէս հայ թարգմանութիւնը կ՚ունենայ յարգ բնագրի։ Իսկ այն թարգմանութիւնները, որոնց բնագիրն ալ անկորուստ մնացած է, մեծապէս կը նպաստեն բնագրաքննութեան, վասն զի մանաւանդ Ս. Հարց գրութիւնները, ինչպէս ըսինք (§ 2)․ դարաւոր պատմութիւն ունին եւ պէսպէս բախտերու հանդիպած են, աղաւաղումներու կրճատումներու, յաւելուածներու, սխալ օրինակութիւններու եւ նման փոփոխութեանց։ Այս պատճառաւ հարկ է քննել ձեռագրաց տարբերութիւնները, բայց մանաւանդ հին լեզուով եւ հին ժամանակ եղած թարգմանութիւնները, որոնց համեմատութեամբ կրնայ դիւրաւ որոշուիլ թէ ո՛րն է հարազատ ընթերցուածն եւ ո՛րը՝ ոչ, մանաւանդ որ եթէ այս թարգմանութիւնները հին եւ անսովոր լեզուով ըլլային՝ չէին կրնար բնագրին աղաւաղումներուն ենթարկուիլ, թէեւ իրենք ալ իրենց յատուկ աղաւաղումները կրնան ունենալ եւ կ՚ունենան։ Այսպէս փոփոխակի ուղղագրութեամբ նախնական բնագիրը կ՚ուղղուի։

Սակայն աւելորդ է այսպիսի պատճառներ որոնել, ո՛րպէս զի ցուցուի մեր մատենագրութեան յարգն ու արժէքը. եթէ ուրիշ արժէք մ'ամենեւին չունենար հայ մատենագրութիւնը, մեզի համար բաւ էր եւ այն որ ինքն եղած է պահապան մեր լեզուին, պատմութեան, հին աշխարհագրութեան եւ փոքր ի շատէ նաեւ հին սովորութիւններու եւ այլն։ Ինքը պահած է նոյնպէս մեր քրիստոնէական ոգին եւ անոր հետ նաեւ մեր գոյութիւնը, մինչ առանց անոր անշուշտ զրադաշտական եւ իսլամական հեղեղին զոհ եղած եւ ձուլուած կ'ըլլայինք այն ազգերու մէջ, որոնք դարերով տիրեցին մեզ։

§ 10. ԱՆՑՈՒՄՆ

Հին մատենագրութեան վրայ այս փոքր ակնարկն ըստ բաւականի ցուցուց անոր ընդհանուր նկարագիրը. սակայն աւելորդ չէ հոս միտ դնել որ երկու գլխաւոր գոյն կը տեսնուին հին մատենագրութեան վրայ։ Նախ բնիկ հին հայ ոգւով եւ ճաշակով եւ հեթանոս Հայաստանի մտաւոր կրթութեանց յիշատակարաններ հայ լեզուով բայց անգիր, կամ գրաւոր բայց օտար լեզուով — որ է անգիր մատենագրութեան ժամանակ։ Սակայն շատ քիչ բան գիտենք այս մասին, եւ այն աւելի ենթադրութեամբ եւ մակաբերելով, վասն զի այս ճոխ մատենագրութենէ մի

քանի հատակոտոր միայն մեր ձեռքը հասած է։

Երկրորդը քրիստոնեայ Հայաստանի մատենագրական ճիգերու արդիւնքն է, երբ մեր քրիստոնէութեան գրեթէ դար մը ետքը Մաշտոց տուաւ Հայ ազգին իրեն սեպհական տառ եւ անով հիմը դրուեցաւ Հայ գրաւոր՝ հայ լեզուով եւ գրով՝ մատենագրութեան, որուն գլխաւոր նկարագիրն է հայրախօսական եւ դոյզն մասամբ պատմական, բայց իւր թէ ինքնագրութիւնները եւ թէ թարգմանութիւնները յոյն եւ ասորի գրոց անմահ յիշատակարաններ եւ կոթող են հայ լեզուին գեղեցկութեան ու վսեմութեան։ Դժբախտաբար սոյն դարուս վերջերը՝ ուր աւելի յոյս պիտի ունենայինք մատենագրական շարժման զարգացման, մանաւանդ երբ Վահանայ ձեռօք քաջքայեալ հայրենեաց կրօնական եւ քաղաքական խաղաղութիւն տրուեցաւ։ Բայց մեր յոյսը ի դերեւ ելաւ կրօնական խնդիրներու յուզմամբ, որոնց արդիւնքն եղաւ Հայոց բոլորովին կղզիացումն յոյն եկեղեցիէն եւ տալով նաեւ մատենագրութեան մեծ հարուած մ'եղաւ ունեցած տխուր դար մ'անմատենագրութեան (Զ. դար)։ Հազիւ Է. դարու կէսին զարթեաւ նոր եռանդ մը եւ Սիւնեաց դպրոցին ճիգերը քիչ մ'ատեն ալ բաւական յաջողութեամբ պսակուեցան, որ կազմեց մեր հին մատենագրութեան երրորդ եւ վերջին կայարանը եւ անոր մա-

բելովը՝ ղաղրեցաւ հինն ալ տակաւ եւ տակաւ եւ զօրացաւ եւ քիչ մ՚եւտքը տիրեց միջին մատենագրութեան նկարագիրը:

Այսպէս կ՚ունենանք երկու գլխաւոր շրջան հին մատենագրութեան, 1) Անգիր մատենագրութիւն. 2) Գրաւոր (հին) ժամանակ. իսկ վերջինս երեք գլխաւոր նկարագիր ունենալով՝ երեք ալ հաստած ունի՝ ա) Ոսկեդէն դար (Առաջին կէս Ե. դարու). բ) Յունական ժամանակ եւ գ) Սիւնեաց դպրոց: Տեսնենք կարգաւ:

## ՇՐՋԱՆ ԱՌԱՋԻՆ
## ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

### ԱՆԳԻՐ ԺԱՄԱՆԱԿ

§ 11 · Անգիր *մատենագրութիւն ըսելով կը հասկցուի ազգի մը այն մտաւոր գործունէութիւնն որ բերանացի սերունդէ սերունդ կ'աւանդուի առանց գրութեան ։ Գրեթէ բոլոր քաղաքակիրթ ազգերն ունեցած են բանաստեղծական անգիր մատենագրութիւն · այսինքն գիրը դեռ մուտք իսկ չգործած՝ ժողովուրդը սովոր է իր քաջերու եւ դիւցազներու մեծագործութիւնները յետնոց աւանդել, գլխաւորաբար* չափական ձեւով, *որով դժուարաւ կրնար աղաւաղուիլ յընթացս այս աւանդութեան եւ վերջապէս կ'ըլլային ժողովրդական երգիչներ, որոնք կամ իրենց կամ ուրիշներու անգիր երգերը կը կրկնէին այլոց առջեւ եւ շատ անգամ շրջելով տեղէ տեղ — այսինքն* հագներգուներ ։ *Մենք ալ ունեցած ենք շատ հարուստ հին անգիր մատենագրութիւն մը, բայց այժմ քանի մը հատուկտոր միայն մեր ձեռքը հասած է ։ Ունինք նաեւ այսօր* նոր անգիր *մատենագրութիւն ալ, որուն վրայ յետոյ կը խօսինք ։ Առ այժմ տեսնենք ա) Հին հայ երգեր, առածներ ու զրոյցներ · բ) Հայ լեզուի հին դա-*

րերը եւ գ) Անգիր Մատենագրութեան վերջերը կամ Հայ գրերու գիւտը եւ հայ գրչութիւնը· դ) Հին (օտարալեզու) հայ մատենագրութեան նշխարները։

1·

§ 12· ՀԻՆ ՀԱՅ ԵՐԳԵՐ ԵՒ ԱՌԱԾՆԵՐ։ — ՄՈՒՏ

Հայոց հին երգերու վրայ այլեւայլ նշանաւոր գրութիւններ երեւցած են։ Միեւնոյն ժամանակ եւ իրարմէ անկախ հրատարակեցին երկու անձեր այլեւայլ գրութիւններ այս նիւթին վրայ, այսինքն Հ· Յովս· Գաթըրճեան, Պատմ· Մատեն· Հայոց, Անգիր ժամանակ· Վիեննա, 1851, էջ 9—62· Երկրորդն է Մկրտիչ Էմին, Վէպք Հնոյն Հայաստանի, քննութիւն· Մոսկուա, 1850, էջ 98։ Գաղղիերէն թարգմանեց եւ ծանօթութիւններով ճոխացուց այս գրութիւնը Éd. Dulaurier, Études sur les chants historiques... de l'ancienne Arménie. Journ. Asiatique. Série IV, Tome XIX, 1852, No. 87, Janvier, էջ 5—58· Ստ· Պալասանեանին Պատմութիւն Հայոց Գրականութեան· Հտ· Ա· Բանաւոր գրականութիւն· Թփ· 1865 նշանաւոր գործ մըն է։ Ընդարձակ երկ մըն ալ հին եւ նոր երգերու վրայ գրեց Մ· Մ· Միանսարեանց, Քնար Հայկական· Ս· Պետր· 1869, Ցոլք· ա—ժբ, բայց գլխաւորաբար, էջ 1—58։ Մ· Էմին կրկին անգամ աւելի ընդարձակ քննութեան ենթարկեց այն նիւթը իւր Մովսէս Խորենացի

եւ Հին Հայկական վէպ (*ռուսերէն Թիֆ.* 1881) *հայ. թրգմ. Խաչ. Ցովհաննիսեանց, Թիֆլ.* 1887, 71 *էջ: Ցիշելու ենք Հ. Գր. Զարբհ. Հայկական Հին Դպրութիւն (Բ. Տպ.* 1886), *էջ* 116—134): Բազմավէպ, 1850, *էջ* 340 *չ. եւ* 1851, 6 *չ.* Բանասէր, 1852, 240, 388. Եւրոպա, *ի մէջ այլոց* 1851, *Թ.* 33. *Եւ նոր ատեններս* Արձագանգ, 1889. *Թ.* 17: *Վերջապէս յիշենք* ճաշակ ոսկեղէնի դպրութեան, *Հտր. Ա.* (*տռանձնատիպ*) *Կ. Պ.* 1887, *էջ* 23—36:

*Հին Հայոց երգերը սովորաբար* Գողթան երգեր *անունով ծանօթ են, վասն զի «գինեւէտ» Գողթան բնակիչներն աւելի սիրած էն եւ երգած հին ատեններն: Այս ընդարձակ երգերէն հազիւ քանի մը հատակոտոր մեզի հասած է, որ են՝*

1.

*Երկնէր երկին եւ երկիր*
*Երկնէր եւ ծիրանի ծով.*
*Երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն.*
*Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,*
*Ընդ եղեգան փող բոց ելանէր,*
*Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր.*
*Նա հուր հեր ունէր.*

*Ապա թէ բոց ունէր մօրուս,*
*Եւ աչկունքն էին արեգակունք*[93]:

[93] *Խոր. Ա. գլ. լա: — Վահագնի ծննդեան վրայ է այս երգը, ըստ Խորենացւոյ:*

2․

*Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն իւր գեղեցիկ*
*Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,*
*Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,*
*Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,*
*Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց․*
*Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին*
*Արագ հասուցանելով ի բանակն իւր*[94]*։*

3․

*Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեան Արտաշիսի․*
*Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն*[95]*։*

4․

*Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս,*
*Զարտախուր խաւարտ եւ զտից խաւարծի,*
*Ի բարձիցն Արգաւանայ*[96]*։*

---

94/95 *Խոր․ Բ․ գլ․ Ծ։ Արտաշիսի ընդդէմ Ալանաց տուած պատերազմին ժամանակ Ալանաց արքայազատեր միջամտութեամբ խաղաղութիւն եղաւ եւ Արտաշէս Սաթինիկն Ալանաց արքայադուստրը կնութեան առաւ։ Այս կ՚երգէ այս տողը, ինչպէս յաջորդ թիւ* 3․ *Սաթինկան հարսանեաց հանդիսութիւնները։ Սաթինիկ խաղաղ կեանք չանցուց, այլ սիրահարեցաւ Արգաւանայ (թիւ* 4)*։*

96 *Խոր․ Ա․ գլ․ Լ։*

5.

Վիշապազունք զողացան զմանուկն Արտա-
ւազդ,
Եւ դեւ փոխանակ եդին[97]:

6.

Մինչ դու գնացեր, եւ զերկիրս ամենայն
ընդ քեզ տարար.
Ես աւերակաց ո՞րպէս թագաւորեմ[98]:

7.

Եթէ դու յորս հեծցիս
Յազատ ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին Քաջք,
Տարցին յազատ ի վեր ի Մասիս.
Անդ կացցես. եւ զլոյս մի տեսցես[99]:

8.

Հատուած գնացեալ Վարդգէս մանուկ
Ի Տուհաց գաւառէն զՔասաղ գետով.
Եկեալ նստեալ զՇրէգ բլրով.

---

[97] Խոր. Գիրք Բ, գլ. կա: «Դեւ փոխանակ եդին» ըսել է «մոլի ըրին» Արդաւազդը Արտաշէս Բ.ի որդին, որուն մասին կը նուագեն նաեւ յաջորդ տողերն, այսինքն երբ Արտաշէս Բ. Հայոց աշխարհաշէն թագաւորն մեռաւ, Հայերը մեծ կոծ ըրին եւ շատերն անոր գերեզմանին վրայ իրենք զիրենք կը զոհէին: Ասոր վրայ տրտնջեց Արտաւազդ (Թիւ 6. որուն վրայ Արտաշէսի սոսւերն երեւնալով Արտաւազդ անիծեց (Թիւ 7):

[98] Խոր. Բ. գլ. կա:

[99] Խոր. Բ. գլ. կա:

*ԶԱրտեմիտ քաղաքաւ, զՏաստղ գետով։*
*Կուել կոփել զղուռն Երուանդայ Արքայի*[100]*։*

9.

*Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի եւ զառաւօտն*
*Նաւասարդի,*
*Զվազելն եղանց եւ զվազելն եղջերուաց.*
*Մեք փող հարուաք եւ թմբկի հարկանէաք*[101]*։*

## § 13. ԵՐԳ ՎԻՊԱՍԱՆԱՑ

*Այս հատակոտորներն արդէն կը ցուցնեն որ մաս են ընդարձակ վիպասանութեան մը, որուն մէջ կարգով Հայոց թագաւորներու կամ նաեւ երեւելի իշխանական տուներու պատմութիւնը կը պատմուէր, այսինքն ճշդիւ այնպէս, ինչպէս ունինք Պարսից հին գրոցներու շղթայ մը գեղեցիկ՝ Ֆիրդուսիի գրչէն ելած, որ* Շահ-Նամէ *կ՚անուանի։ Խորենացի*[102] Երգ Վիպասանաց *կը կոչէ այս երգերու բովանդակութիւնը, կը յիշուին նաեւ* «Թուելեաց երգք»[103]*,*

100 *Խոր. Բ. գլ.* կե*։ Այս տողերս Վաղարշապատու շինութիւնը կը նկարագրեն։*

101 Մագիստրոս *լսած է այս տողերը իր ժամանակին գեղջկաց բերնէն։*

102 *Խոր. Բ. գլ. խը։ «Որում եւ Պարսից մատեանք վկայեն եւ* երգն վիպասանաց»*։ — «Արտաշիսի վերջնոյ գործք* յայտնի են քեզ ի վիպասանաց, *որ պատմին ի* Գողթան»*։ — «Այս ամենայն յայտնի են քեզ* յԵրգս վիպասանաց»*։*

103 *Խոր. Ա. գլ. լ. «Ցայտնեն զայս ճշմարտապէս եւ* թուելեացն *Երգք»։*

«առասպելք», երգ առասպելաց[104] անուամբք: Թէ բովանդակ Հայոց պատմութիւնը կը բովանդակէր այս երգերու մէջ, կրնանք գուշակել դիւրաւ, վասն զի Խորենացի շատ տեղ յայտնի կը յիշէ թէ այս կամ այն դէպքը կ՚երգեցուի նաեւ Գողթան երգերու մէջ: Յիշելով որ Ողոմպիոդորոս յոյն փիլիսոփային հին զրոյցը թէ Քսիսութրոս Կորդուաց լեռներն ի Հայս իջաւ, եւ Սեմայ Տարբան որդին Հայաստանի հարաւակողմերը բնակեցաւ, որով նոյն լեռն Սիմ եւ երկիրը Տարաւն կոչուեցաւ, կը յաւելու պատմագիրը թէ հին Հայոց երգերու մէջ ալ կ՚երգեցուի այս պատմութիւնը[105]: Թէ նաեւ Արամայ դէպքերը կային այս երգերու մէջ, կը խոստովանի Խորենացի Մար-Աբասի բերանը դնելով[106]: Բայց աւելի յայտնի Շամիրամայ դէպքերն եւ Արայի պատմութիւնը յայտնի երգերուն վկայութեամբ կը հաստատէ Խորենացի, որոնք կը պատմեն թէ Շամիրամ փախչելով ի Հայս իւր Նինուաս

---

104 Բուզանդ Գ. գլ. ժգ. «Զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն»: Խորենացի շատ տեղ «երգ», «առասպել» կ՚անուանէ:

105 Խոր. Ա. գլ. գ. «Բայց առաւել յաճախագոյն ինքն արամազնեաց ի նուագս բամբռան եւ յերգս ցցոց եւ պարուց զայսոսիկ ասեն յիշատակօք»: Անել կը նշանակէ հոս երգել, նուագել:

106 Խոր. Ա. գլ. ժգ. «Բայց թէպէտ եւ ոչ ի բուն մատենանն, սակայն ասա Մար Աբաս Կատինա պատմէ, ի փոքունց ոմանց եւ յաննշանից արանց ի զուսանականէն այս գտանի ժողովեալ ի գիւանի արքունեաց»:

որդւոյն ձեռքէն, վրայ կը հասնին Սուսերաւորք, իսկ Շամիրամ ձեռքի ուլունքը ծով (Բզնունեաց) կը ձգէ եւ կը պոռայ «Ուլունք Շամիրամայ ի ծով»․ ինքն ալ քար կը դառնայ[107]: Արայի մահուան գրոյցն հանդերձ իւր մանրամասնութեամբ կը գտնենք Պղատոնի Հասարակապետութեան գրքին մէջ[108], որ կը պատմէ թէ էրա (= Արայ) որ պատերազմի մէջ մեռաւ, բայց տասներորդ օրն իւր մարմինն անարատ գտնուեցաւ պատերազմի դաշտին մէջ երկոտասաներորդ օրն խարուկի վրայ եղած ատեն՝ յարութիւն առաւ եւ հանդերձեալ իրերն սկսաւ պատմել: Այս բոլոր պարագաները շատ լաւ կը յարմարին Արային, զոր արալէզք լզելով յարուցին կամ այսինքն թէ այսպիսի գրոյց մը տարածուեցաւ Հայոց մէջ, եւ զոր «Վիպասանաց երգ»ը կ'երգէր անշուշտ: Թէ Երուանդ Սակաւակեացի քեռայր

---

107 Խոր. Ա. ժը. «Առ այսօքիւ՝ եւ աշխարհիս մեբոյ առասպելք... արդարացուցանեն, ասա ուրեմն զմահն առել Շամիրամայ, եւ զհետեւակ փախուստն, եւ զպապաքումն եւ զփղձս ջրոյն եւ զարբումն, այլ ի մօտ հասանել սուսերաւորաց, եւ զյուռութն ի ծով, եւ բան ի նմանէ՝ Ուլունք Շամիրամայ ի ծով: Ալ թէ ախորժես առասպել, եւ Շամիրամ քար առաջին քան զնիոբէ»: Բայց ըստ Հ. Ց. Գաթըրճեանի (էջ 46) այս տողը բառ առ բառ երգէն չէ առնուած, այլ Խորենացին է որ զՇամիրամ Նիոբէի հետ կը համեմատէ:

108 Հմմտ. Oeuvres de Platon, trad. p. V. Cousin, Paris, Tome X, p. 279—295: Տես էմին, Վէպք, էջ 85—92. Ինճիճեան, (որ դէր = կար կը դնէ), Հնախօսութիւն Հայ. Հտ. Գ. 66 քք:

Վարդգէսի Վաղարշապատ շինելու պատմութիւնը կար «երգ»ոց մէջ՝ կը ցուցնէ Հատակոտորն (թիւ 8), ուր Վարդգէս «Երուանդ արքայի» դուռը կը կռէ կոփէ[109]: Տիգրանայ քաջագործութիւնները կը պատմուէին այս Երգերու մէջ եւ զՏիգրան շատ իսկ կը գովէին[110], եւ նաեւ Աժդահակայ դէպքերը կը հռչակէին, ինչպէս անոր պարտութիւնն ու տան պանդխտիլն ի Հայս, եւն: Խորենացի կը յաւելու[111] «յայտնեն զայս ճշմարտապէս եւ թուելեացն երգք, զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինաւէտ գաւառին Գողթան. յորս շարին բանք երգոցն զԱրտաշիսէ եւ զորդւոց նորա, յիշելով այլաբանաբար եւ զզարմիցն Աժդահակայ՝ վիշապազունս զնոսա կոչելով. զի Աժդահակդ ի մեր լեզուս է վիշապ: Այլ եւ ճաշ ասեն գործել Արգաւանայ ի պատիւ Արտաշիսի, եւ խարդաւանակ լեալ նմին ի տաճարին վիշապաց: Այլեւ Արտաւազդայ ոչ գտեալ ասեն, քաջի որդւոյն Արտաշիսի, տեղի ապարանից՝ ի հիմնանալն Արտաշատու. նա անց, ասէ, գնաց եւ շինեաց ի

109 Խոր. Բ. գլ. կե: «Սա պատեաց պարսպաւ եւ զհզօր աւանն Վարդգէսի..., յառասպելն զորմէ ասեն (Տես Թ. 8):

110 Խոր. Ա. իդ. «Խարտեաշս այս եւ աղէրեկ ծայրիւ հերաց երուանդեանս Տիգրան, երեսօք գունեան, եւ մեղուակն... զորմէ ասէին ի հինսն մեր, որք բամբռամբն երգէին, լինել սմա ի ցանկութեան մարմնոյ չափաւոր, եւն»:

111 Խոր. Ա. լ. (տպ. 1843, էջ 58):

մէջ Մարաց զՄարակերտ, որ է ի դաշտին՝ որ անուանեալ կոչի Ծարուրայ: Այլ եւ տեն-չայ, ասեն Սաթինիկ... (տես Թ. 4.): Եւ արդ ո՞չ առաւել աստանօր զարմասցիս ի վերայ մերոյ ճշմարտապատմութեանս, թէ ո՛րպէս յայտնեցաք զանյայտ իրս վիշապաց, որք են յազատն ի Մասիս»: Այս կտորը յայտնի կը ցուցնէ Հայկական այս «Վիպա-սանաց երգ»ին ընդարձակութիւնը. վասն զի կը յիշուի Մարաց գերութիւնը (Քրիստոսէ յառաջ Զ. դար), իսկ վերջերը՝ Արտաշիսի, Արտաւազդայ, Արգաւանայ եւ Սաթինկան դէպքերը (Բ. դար Յ. Ք.). ուրեմն այս երգերը 700 տարուան պատմութիւն կը բո-վանդակէին՝ այս հայ Շահ-Նամէի մէջ[112]: Վահագնի քաջութիւնները կ'երգէին այս հայ հոմերականք, որոնց մի պատառն պահած է Խորենացի[113] եւ յետոյ կը յաւելու թէ[114] «Յետ որոյ եւ ընդ վիշապաց սաէին յերգն կռուել նմա եւ յաղթել, (Վահագն վիշապա-քաղ տիտղոս կը կրէ առ Ագաթանգեղեայ[115]) եւ կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նա-հատակութեանց նմա երգէին»: Արշակու-նեաց պատմութեան բաւական մաս մ'այ կար այս Երգերու մէջ, որոնք կը հռչակեն նախ Տորքի հուժկութիւնը, որ ձեռքով ժայ-ռեր կը ճեղքէր, եղնգով քարեր կը դծէր եւ

[112] Հմմտ. Էմին, Վէպք, էջ 17—19. Հ. Յ. Գա-թըրճեան, Անգիր ժամանակ, էջ 22—23 եւ այլք:

[113] Տես թիւ 1:

[114] Խոր. Ա. գլ. լա:

[115] Ագաթ. տպ. Վենետ. 1862, էջ 606:

արծիւ կը նկարէր եւ Պոնտոսի մէջ ժայռեր ճզելով նաւերը կ՚ընկղմէր[116]: Տորքի քաջութեանց նկատմամբ պատմուածները շատ կը նմանին Ողիսականին Պողիփեմոսի[117] եւ Վերգիլիոսի Քակուսի վրայ պատմածներուն[118]: Տեսանք արդէն Արտաշիսի, Արտաւազդայ, Սաթինկան եւ Արգաւանայ վրայ երգերու ճառելը, որ կը յաւելուր Արգաւանայ մահը եւ Մուրացան ցեղին կոտորածը, Արգամայ որդւոյն պատերազմին, եւ այլն եւ կը յաւելու թէ «Այս Արգամ է որ յԱռասպելին Արգաւան անուանի[119]»: Նաեւ Երուանդայ ծննդեան պատմութիւնը, զոր Խորենացի զրոյցէն կ՚առնու[120], կ՚երեւայ թէ Վիպասանաց երգին մէջէն է[121]: Սմբատ Բագրատունւոյն նկարագրութիւնը Խորենացի կ՚ըսէ յայտնի

---

[116] Խոր. Բ. գլ. ը. էջ 79. «կարի անյարմար թուէին նմա երգ բանիցն վասն ուժգնութեանն... քանզի երգէին...»:

[117] Հմմտ. Հ. Յ. Գաթըրճեան, Տիեզ. Պատմութիւն, Հտր. Ա. էջ 585. Անդիր ժամանակ, էջ 48: — Մ. Էմին, Վէպք, 29:

[118] Մ. Էմին, Մովսէս Խորենացի եւ Հայկական վէպ. Թրգմ. Խ. Յովհաննիսեանց, էջ 58 շ.:

[119] Խոր. Բ. գլ. ծա. (տպ. Վենետ. 1843, էջ 130):

[120] Խոր. Ա, գլ. լ. «Երուանդ ոմն, որդի կնոջ Արշակունւոյ... Ունին զրոյցք յաղագս նորա այսպէս: Կին ոմն յազգէ Արշակունեաց. եւն»: Անշուշտ բովանդակ Երուանդայ գործերն (մինչեւ գլ. խե) այս աղբիւրէն են:

[121] Հմմտ. Մ. Էմին, Վէպք, էջ 30:

*թէ «տառապել»էն առած է*[122]*, որ Նաեւ Սմբատայ ընդդէմ Հռոմայեցւոյ («Դոմետ» ըստ տառապելին) մղած պատերազմը կը նկարագրէր*[123]*: Արտաշիսի մահուան նկարագրութեան կտոր մ՚է անշուշտ թիւ 9. որուն մէջ Արտաշէս «զվազել եղանց, եւ զվարգել եղջերուաց» կամ որսորդութեան փափաքը կը յայտնէ*[124]*: Յայտնի է վերջապէս Արտաւազդայ անիծուիլն եւ Քաջերէն կապուիլն յԱզատն Մասիսի մէջ, եւն, որուն վերջին մասերը* զրոյցէ *առած է*[125]*: Այդ զրոյցը կը յիշէ եւ Եզնիկ*[126]*: —*

*Արդէն այս ամէնն այնչափ լուսաւորութիւն տուաւ մեր խնդրին, որ կրնանք այժմ*

---

122 *Խոր. Բ. գլ. ծր. «Սիրելի է ինձ աստ եւ վասն առնն քաջին Սմբատայ. քանզի արդարեւ* ըստ տառապելին *ոչինչ կարի հեռի ի ճշմարտութենէն, որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջութեանն, եւ առաքինութեան ուղղոյն որսորդ, եւ գեղեցկութեան ալեօք վայելչացեալ. սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն՝ որպէս դրախոնտիկոն ի վրայ ոսկւոյ եւ ի մէջ մարգարտոյ ծագէր, եւն». — անշուշտ երգերու մասն են այս տողերը:*

123 *Խոր. Բ. գլ. ծգ. «Զայս կամելով* երգել յառասպելսն, *Դոմետ զանն ասեն եկեալ...»:*

124 *Հմմտ. Հ. Յ. Գաթըրճեան, Անգիր ժամանակ, էջ* 50:

125 *Խոր. Բ. գլ. կա.* «Զրուցեն զմմանէ եւ պառաւունք, *եթէ արգելեալ կայ յայրի միում՝ կապեալ երկաթի շղթայիւք. եւ երկու շունք հնապազ կրծելով զշղթայսն, ջանայ ելանել եւ առնել վախճան, եւն»: Այս զրոյցը ծանօթ է եւ Վրաց սակաւ փոփոխութեամբ: Տես* Մ. Էմին, *Վէպք. էջ* 41 *շ.*:

126 *Եզն. էջ* 105:

*մեր «վիպասանաց երգ»ոց բովանդակութեան կմախքը չինել: Աւելի կը տեսնուի որ գրեթէ Հայկազեանց եւ Արշակունեաց սկըզբան բովանդակ դէպքերը կը գտնուէին այս «վիպասանաց երգ»ոց մէջ երգուած: Մանաւանդ թէ արդի քննութիւնը կ'ուզէ ապացուցանել թէ Մովսէս Խորենացի բոլոր Հայկազեանց եւ Արշակունեաց սկզբին մասերը միմիայն այս վիպասաններէն հանած է եւ միայն սքօղելու համար «Մար-Աբաս» անունը գրած է, այնպէս որ Մար-Աբաս եւ Երգ վիպասանաց համանիշ են*[127]*: Ըստ այս կարծեաց մեր երգերու նիւթն ու բովանդակութիւնն եւ ընդարձակութիւնը բաւական ճշդիւ գիտցած կ'ըլլան: Սակայն միշտ անկշռելի կորուստ է որ անհետ կորսուած են այս ճարտարագործ երգերը կամ Հայ Շահ-Նամէն: Տեսանք այս երգերու նիւթն եւ բովանդակութիւնը, տեսնենք անոնց հեղինակները, ժամանակը, տեսակներն ու արուեստը:*

## § 14. ԵՐԳԵՐՈՒ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԸ

*Երգերու հեղինակներն ու ժամանակն հարկաւ մեզի համար գորդեան հանգոյց մ'ըլլալու են, երբ հազիւ հազ թէ կրցանք իմանալ այն երգերու, ինչ ըլլալը: Բայց ստոյգ է որ ընիկ հայ ազգի են եւ այն անշուշտ Գողթան գաւառէն: Վասն զի թէ-*

127 Մ. Էմին, *Մովսէս Խոր. եւ Հայկական վէպ, ման. էջ* 8—30:

պէտ եւ բովանդակ Հայոց ծանօթ ըլլալու են այս երգերը, բայց մասնաւորաբար միշտ Գողթնեցիք կը յիշուին երգիչ եւ պահպանիչ այս վիպասանութեան երգերու: Խորենացի շատ կ՚ըսէ «ի վիպասանացն, որ պատմին ի Գողթան[128]»․ «Թուելեաց երգքն, զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինաւէտ գաւառին Գողթան[129]», եւ այլուր: Բայց աւելի որոշ կ՚իմանանք այս խօսքէն[130]․ «Զամանէ երգիչքն Գողթան առասպելաբանեն այսպէս… Մինչ դու գնացեր», եւն․ (Տես Թ․ 6): Ուրեմն յայտնապէս «Վիպասանաց երգը» հոս Գողթան երգիչներու կը տրուի: Խորենացի կը պարսաւէ այլուր Հայոց «անսիրելութիւնը» «երգարանաց բանաւորաց»[131], բայց միւս կողմանէ ինքն ալ (ինչպէս յիշեալ խօսքերը կը ցուցնեն) կը խոստովանի որ «ախորժելով» կը պահէին իրենց վիպասանաց երգերը: Դեռեւս հինգերորդ դարու մէջ այնչափ սիրուած էր Հայոցմէ այս վիպասանութիւն երգելը, որ Փաւստոս Բուզանդ իբրեւ նշան Հայոց ոչ բոլոր սրտիւ քրիստոնէութիւն ընդգրկելուն կը համարի եւ յայտնի կ՚ըսէ[132]․ «Միտք իւրեանց ընդ անպիտանս ընդ անօգուտս նւէթ զբօսեալ էին… այնպէս

---

[128] Խոր․ Բ․ գլ․ խթ․ տպ․ Վենետ․ 1843, էջ 127, տող 13 եւ 21:

[129] Խոր․ Ա․ գլ․ լ․ տպ․ 1843, էջ 58:

[130] Խոր․ Բ․ գլ․ կա․ տպ․ 1843, էջ ,38—139:

[131] Խոր․ Ա․ գլ․ գ․ էջ 7, 18 (տպ․ 1843):

[132] Բուզանդ․ Գիրք Գ․ գլ․ ժգ:

եւ դեգերեալ մաշէին *յանուղղայ կրթութիւն ընդ չքոտի մտացն ի հնութիւն հեթանոսութեանց սովորութեանց, բարբարոս խուժադուժ միտս ունելով։ Եւ զիւրեանց* երգս առասպելաց զվիպասանութեանն սիրեցեալ ի փոյթ կրթութեանց, եւ նմին հաւատացեալ, եւ ի նոյն հանապազորդեալ»։ *Քրիստոնէութիւնն լաւ աչքով չէր կրնար նայիլ այս երգերու վրայ, որոնք հեթանոսութեան հետ անխզելի կապով կը զօդէին Հայերը, այնպէս որ Գողթնեցիք՝ ուր Հայրենիք էր վիպասանութեան, դեռ Ե. դարուն մէջ ծածուկ հեթանոս էին եւ Մաշտոց Մեսրոպ դանոնք դարձուց*[133], *որով հարկաւ տակաւ անհետ կորսուեցան նոյն երգերը, որոնք խոտան եւ պիղծ պիտի համարուէին քրիստոնեայ Հայոց մէջ։ Բայց եւ այնպէս հինգերորդ դարու մէջ իսկ դեռ կային սիրողք։ Ծանօթ է նոյնիսկ Սմբատ Բագրատունւոյ Պարսից եւ Հայոց առասպելաց ցուցուցած փոյթը զոր կը կշտամբէ ինքն իսկ Խորենացի* մանուկ *կոչելով զՍմբատ եւ «անհաստութեան խակութեան» գործք*[134]*։ Սահակայ քաջ ծանօթ էին այս երգերու նիւթն ու բովանդա-*

---

[133] *Կորիւն, տպ. Վենետ.* 1833, *էջ* 7 *եւ* 14։ *Խոր. Գ, գլ. խէ եւ* կ։

[134] *Խոր. Ա. գլ. լ. ի վերջը Ա. գրոց (տպ.* 1843, *էջ* 62)*. «Այլ զի՞նչ արդեօք տարփանք քեզ՝ եւ Բիւրասպի Աժդահակայ փծուն եւ անճոռնի առասպելք իցեն... Այլ տացուք զպատոսիկ մանկականի քոյոց տիոց եւ անհաստութեան խակութեանդ լեալ տարփանք»։*

կուլթիւնն, այնպէս որ Խորենացին շատ անգամ կը յիշէ թէ «յայտնի են քեզ յերգս վիպասանաց»․ «յայտնի են քեզ ի վիպասանաց»[135], եւն։ Նաեւ Ս․ Գրոց թարգմանիչները կամայ թէ ակամայ այս երգերը կը յիշեն։ Եսայեայ թարգմանիչը (Ես․ ԽԱ․ 7) գտնելով բնագրին մէջ «քաջալերեսցէ այր հիւսն, եւ դարբին հարկանէ զուռն» կարդալով՝ գրչէն թերեւս սպրդելով՝ թարգմաներ է «Քաջալերեսցէ հիւսն զդարբին, կռել կոփել ո՛ւռն հարկանել», ուր կռել կոփել յաւելուածը վիպասանին «կռել կոփել զգուռն Երուանդայ», կը յիշեցնէ[136]։ Ս․ Գրոց շատ տեղերը, մանաւանդ սաղմոսաց, մարգարէութեանց եւ քանի մը գրքերու մէջ տեղ տեղ այնպիսի թարգմանութիւն կը գտնենք, որ մեզ մեր նախնեաց երգերն ու ներդաշնակաւոր ել եւ էջ մը կը ցուցնեն[137]։

| | |
|---|---|
| Ցյն․ «Աւար գունոց Սիսարայ, աւար գունոց գունազոյն, գոյնք նկարակերպաց այն պարանոցի նոր աւար»։ | Հայ․ «Կապուտ երանգոյն Սիսարայ, կապուտ երանգոյն գունազոյն նկարուց, նարօտ պէսպէս նկարուց․ ա՛յն էր պարանոցի նոր կապուտ»։ |

135 Հմմտ․ Խոր․ Բ, գլ․ խթ․ եւ այլուր։

136 Հմմտ․ Հ․ Ց․ Գաթրըճեան, Անգիր ժամանակ, էջ 39։

137 Դնենք միմիայն օրինակ մ'այս ներդաշնակաւոր թարգմանութեանց, (Դատ․ Ե․ 30)։

Բնագրին հաւատարիմ մնալով ալ՝ յայտնի ներդաշնակութիւն կը տեսնուի։ Փարպեցի ալ կ'ըսէ «իբրեւ զառաջին քաջացն, զոր ի վէպսն պատմեն եւ լսեմք»։

*Սակայն պէտք չկայ սատ ցուցնելու թէ կը սիրէին Հայերը նաեւ հինգերորդ դարու մէջ իրենց երգերը։ Դեռ նոյն դարուն վերջերը ըստ աւանդութեան, Խորենացին անձամբ լսած է նոյները*[138]*։ Ո՞վ կրնար կարծել որ նաեւ Ժ։ դարուն դեռեւս կը լսուէին ժողովրդեան բերանը սոյն երգերէն, եւ սակայն Մագիստրոս լսեց գեղջկան բերնէն եւ իր հաղորդած պատառիկը (Տես Թ. 5) արդեամբ ալ հարազատ է։ Թերեւս եւ այժմ գտնուին սոյն աւանդութեան բեկորները, որուն վրայ քիչ մ'եռքը։*

*Տարակոյս չկայ որ* միեւնոյն *դրչի գործ ըժուարաւ կրնար ըլլալ այս հայ Շահնամէն, վասն զի նոյն գրութեան մէջ, ինչպէս տեսանք, Հայկէն սկսեալ մինչեւ Արտաւազդ եւ աւելի ուշ թերեւս միասմի կը պատմուէին, որոնց մի մասն չատոնց գրուած էր*[139]*, մինչ Արտաւազդայ վրայ գրուածներն հարկաւ շատ ուշ ատեն պիտի գրուէին։ Սակայն ստոյգ բան մ'ըսել չենք կրնար այս նկատմամբ. ստոյգ է միայն որ* հեթանոս *էին այս գրողները, որ յայտնի է անկից որ մեր պատմիչները միշտ* հեթանոսական գործ *կը համարին զանոնք, մանաւանդ թէ Բուզանդ յայտնի խիկ «հնութիւն հեթանոսութեանց ավորութեանց» կը կոչէ զանոնք սիրելը եւ*

---

138 *Խոր. Ա. գլ. լա.* «Զայս երգելով *սմանց բամբռամբ, լուաք խկ ականջօք մերովք»։ — Խոր. Ա, գլ. խզ. «Զորմէ ասէին... որ բամբռամբ* երգէին։

139 *Խոր. Ա. գլ. ժզ։*

վերջապէս որ Գողթնացիք այս երգերու մէջ ունենալով՝ հեթանոս ալ մնացին: Յականէ յանուանէ բանաստեղծ կը յիշուի Արտաշիսի օրերով Վրոյր[140], զոր Արտաշէս տան արքունեաց հազարապետ անուանեց: Ունէ՞ր արդեօք Վրոյր ալ մաս այս երգերու մէջ. չենք գիտեր: Գիտենք միայն կային շատ բանաստեղծներ, որոնք տեղէ տեղ պտտելով կ'երգէին ասոնք, ուստի ճշդիւ կեղտաց տրուիտններու կամ Հոմերոսը նուագող հագներգուաց պէս: Զայս յայտնի կը ցուցնէ Խորենացւոյն խօսքը թէ «լուաք իսկ ականջօք մերովք», մինչդեռ այլուր «զոր պահեցին, որպէս լսեմ, բնակիչք... Գողթան». ուստի ինքը Գողթնի մէջ չէ լսած, այլ ա՛յլ նուագողներ շրջո՛ղ (հագներգուք) իւր առջեւը նուագած: Ծանօթ է նաեւ պարաւորաց առջեւն իսկ կ'երգէին ասոնք[141]: —

Այս երգերու նկարագիրն վիպական (épique) էր, ինչպէս դիւրին է գուշակել մինչեւ հիմայ բուռածներէն. մեր ունեցած հատակոտորներն ալ նշան են ասոր: Ուստի այս երգերը կրօնական չէին կամ թէ ի պատիւ դից եւ բագնաց առջեւ երգելու չէին յօրինուած, այլ Հայոց հին դիւցազներու

---

140 Խոր. Բ. ծգ. «Կարգէ Արտաշէս զՎրոյր՝ հազարապետ, զայր իմաստուն եւ բանաստեղծ»:

141 Խոր. Բ. գլ. ծ. «Զայս տեղի առասպելաբանելով վիպասանքն յերգելն իւրեանց ասեն...: Խոր. Ա. գլ. (տպ. 1843, էջ 17) «Հինք արամազնեաց ի նուագս բամբռան եւ յերգս ցցոց եւ պարուց զայսոսիկ յիշատակեն»:

կենսագրութիւնն էր, որուն մէջ բովանդակուած էր հարկաւ Հայոց հին եւ նոր դիցաբանութիւնն ալ։ Թերեւս քուրմ չէին յօրինողները. բայց սոյդ կ՚երեւայ թէ դէթ այսպիսի անձեր էին որ արքունիքն անգամ համարձակ մուտք ունէին[142] եւ տեղեակ էին անոր մէջ եղած դաղտնիքներու անգամ, ինչպէս մեր ունեցած հատակտորներու մէջ անգամ կը տեսնենք Սաթինկան նկատմամբ։ Սոյն երգերն էին որ Արտաւազդայ ընդդէմ Արգաւանայ ունեցած ծածուկ նախանձն ևւն կը պատմեն։ —

## § 15. ԵՐԳԵՐՈՒ ՍԵՌԸ

Այս երգերու տեսակաց վրայ շատ բան չենք գիտեր։ Տեսանք որ այս երգերը կը կոչուէն առասպել, երգ առասպելաց, վիպասանութիւն, բայց գլխաւորաբար «վիպասանաց երգք» եւ «թուելեաց երգք» կը յիշուին։ Արդեօք ի՞նչ տարբերութիւն ունին այն «թուելեաց երգք»։ Այս երկու անունները առիթ տուած են կարծեաց թէ երկու տեսակ էին Հայոց այս հին երգերը։ «Թուելեաց երգ»երը ժամանակագրական կարգաւ կը պատմէին, մինչ «վիպասանաց» երգերը աւելի իրենց երեւակայութեան կը հետեւէին[143]։ Բայց կայ աւելի լաւագոյն կար–

---

[142] Հմմտ. Հ. Ց. Գաթըրճեան, Անդիր ժամանակ, էջ 23։

[143] Այսպէս Մ. Էմին, Վէպք, էջ 19։

ծիք[144] թէ «Թուելեաց երգք» եւ «վիպասանաց երգ» միեւնոյն բանը կը ցուցնեն: Արդեամբ ալ Խորենացի Արտաշիսի Բ. գործերու համար կ'ըսէ թէ «այս ամենայն յայտնի են քեզ յերգս վիպասանաց», եւ սակայն ինքն է ըսող թէ «Յայտնեն զայս եւ թուելեացն երգք... յորս չարին բանք զԱրտաշիսէ եւ զորդւոց նորա»...: Բայց թէ ի՛նչ պատճառաւ «Թուելեաց երգ» կ'անուանէին, յայտնի չէ գիտուաւ: Կան որ կ'ըսեն այսպէս կ'անուանուէին, այն երգերու «Թուականութիւն կամ չափականութիւնն» ցուցնելու համար, սակայն եւ այնպէս անչափակցեալ եւ անթուական երգ մ'ենթադրել չկրնալով՝ տարակուսական կը մնայ այս մեկնութիւնը:

Հայոց մէջ կար Հին ատեն եւ քնարերգական բանաստեղծութիւն, որուն երկու գլխաւոր տեսակները կը յիշուին մեր պատմագիրներու մօտ: Այո չենք կրնար ճշդիւ ըսել ի՛նչ տեսակ էին նուագ, գեղօնք, մրմունջք, ցուցք եւ այլն անուամբ յիշուած երգերը: Բայց գիտենք որ խնճոյքի, կոչունքի, հարսանիքի ժամանակ եւ այլ ուրախութիւններու ատեն մեծամեծներն եւ թագաւորները երգեցիկներու խմբեր կ'ունենային[145], հարսանիքի ցուցք եւ ցցոց երգեր

---

144 Հմմտ. Մ. Մխիթարեանց, Քնար Հայկական, Երգեր, էջ 23:

145 Խոր. Գ. գլ. ԺԹ. «Իսկ Արշակ... հանապազ ի գինարբուս եւ յերգս վարձկանաց»: — Խոր. Բ, գլ. կզ. «Ցուրախանալն գինւով՝ տեսեալ Տրդատայ

ալ կը յիշուին[146]: Ինչպէս յայտնի կը տեսնուի այս յիշուած վկայութեան խօսքերէն, այսպիսի նիւթերու մէջ աւելի քանաստեղծուհիներն էին տիրող եւ իրենք էին այն «վարձկան» երգիչները մեծ մասով: — Երկրորդ նիւթն հայ քնարականին էր սուգ եւ մահուան, յուղարկաւորութեան ողբերգական երգեր: Հին հեթանոսները չափազանցութեան կը դիմէին այս պարագայի մէջ, իրենց ողբերու եւ կոծերու չափ ու սահման չկար: Նոյնը կը տեսնենք Հայոց մէջ ալ. բաւական է յիշել միայն Փաւստոսի կոծը Գնելի դիակին վրայ, որ ճշգրիտ նկարագիր հայոց մեռելի վրայ ըրած կոծին[147]: Կը վար–

գկին զի ...երգէր ձեռամբ... աւէ ցԲակուր. Տուր ինձ զվարձակս գայս»: — Բուզանդ, Դպր. Ե. գլ. Ա. գեղեցիկ կը նկարագրէ Պապայ տրուած խնճոյքն, որուն մէջ ի մէջ այլոց «Թմբկահարք եւ սրնգահարք քնարահարք եւ փողահարք իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան... Եւ նստէր (Պապ) ընդ պէսպէս ամբոխ զուսանացն եւն»:

146 Ագաթ. տպ. Վենետ. 1862, էջ 143 (ժէ). «Առ հասարակ երգս առեալ բարբառեցան կայթիւք վազելով՝ ցուց բարձեալ մարդկանն... Համարէին հարսանեացն զպարսն պարել եւ զկաքաւս յարդարել»:

147 Բուզ. Դ. գլ. Ն. «Թագաւորն գնացեալ ի լալիսն, նստեալ լայր... Երթեալ նստէր մօտ առ դին, լայր ինքն. եւ տայր հրաման՝ կոծ մեծ եւ աշխար դնել չուրջ զապանելով դիակամբ: Իսկ կինն սպանելոյն Փառանձեմ զհանդերձն պատառեալ, զգէսս արձակեալ, մերկատիտ կայր ի մէջ աշխարանին կոծէր, ձայն արկանելով ճչէր, յողբս արտասուաց ազխողորմ զուժի առ հասարակ զամենեսեան ցուցանէր... Զհերն փետէր, ճչէր ընդ կոծելն, եւն»: Հմմտ. վար ծնթ. 150) :

ծէին նաեւ կոծի եւ ողբի սեպհական երգեցիկներու խմբեր, որոնք «ձայնարկուք» եւ «եղերամարք» կ'անուանուէին իրենց առաջնորդն ալ «մայր ողբոց» որոնք «ի ձայն ողբոց» կեղծեալ ցաւով կը կոծէին մեռեալը[148]: Ասոնց պաշտօնն էր նաեւ ծափահարութեամբ[149] եւ ողբերգական պարով աշխարել[150] եւ սովորաբար ալ իրենց այս ողբերգական երգերը որ մրմունջք կը կոչուէին՝ ընկերացած էին նուագարաններով[151] եւ այս երգով մեռելին կեանքի նկարագրութիւնը կու տային կամ «փոքր վիպասանութիւն» մը անոր քաջագործութեանց[151]: Այս սովորութիւնները բոլորո–

---

148 Բուզ. Անդ. «Ապա իբրեւ մեծ իւրն համարձակ յայտնեցան ի լսելիս ամենեցուն եւ ի ձայնարկութն ամենայն, եղեւ նա մայր ողբոցն, եւն»:

149 Տես Բուզ. Ե. գլ. լա. Բայց նաեւ Դ. գլ. ւ. «Թագաւորն ծափս զծափի հարեալ մեծաւ զղջմամբ ընդ իրս՝ զոր գործեաց»:

150 Բուզ. Ե. գլ. լա. «Յորժամ զմեռեալ լային, փողովք եւ փանդռօք եւ վնօք զկնծանս պարուցն կաքաւելով, զտխզան հարեալս, զերեսս պատառեալս, արք եւ կանայք պղծութեամբ ճիւաղութեամբ պարուք դէմ ընդ դէմ հարկանելով, կամ ծափս հարկանելով, զմեռեալն յուղարկէին»:

151 Բուզ. Դ. գլ. ժդ. «Ձայնարկուքն ամենայն ի ձայն ողբոցն սկսան նուագել զիրսն… Տիրիթայ, զմկն զնելն, զքաջութիւնն, զհնարս մահու նիւթել, զսպանումն, ձայնիւքն մրմնջոցն ի վերայ սպանելոյն ի մէջ կոծոյն բարբառէին»: — Նաեւ ամենաչքեղ յուղարկաւորութիւնը մանրամասն կը յաւելու «եւ զկնիան ձայնարկու կուսանք, սեւազգեստք եւ աշխարող կանայք»:

վին ընաջինջ չկրցաւ ընել քրիստոնէութիւնը Հայոց մէջէն. այսօր իսկ կան տեղ տեղ այս «լալկան» կանայք, որոնք ճչելու հիներու պէս մեռելին կենսագրութիւնը կը պատմեն ողբալով, եւ այլեւայլ հրաժարականներ, յորդորներ որ յառնէ ննջեցեալն, եւն, կ'երգեն[152]: Սակայն քրիստոնէութիւնը միշտ ջանաց արմատախիլ ընել ասոնք եւ արդէն հինգերորդ դարու մէջ հեթանոսական պղծութիւն կը համարուէին, այնպէս որ հեթանոսութիւնը Հայոց մէջ նորէն մուծանելու իբրեւ զէնք առնուեցան այս սովորութիւնները[153] հինգերորդ դարու կէսին: Հայոց եկեղեցական օրէնսդրութիւնը միշտ օրէնքներ կրկնեց այս սովորութեանց դէմ[154]. մեր մատենագիրներու ալ ատելութիւնն այս նկատմամբ յայտնի է, նաեւ ըեմէն յաճախ կը քարոզուէր յարութեան յոյսը:

Ամէն կրթեալ ազգերու մէջ հարկաւ կը գտնուի նաեւ թատերական բանաստեղծութեան աստիճան մը, բայց այս տեսակն իւր

---

152 Հմմտ. նաեւ Մ. Մինաս., Քնար Հայկ. Երգեր, էջ 41—42:

153 Եղիշէ, տպ. Վենետ. 1859, էջ 48. «Ցերկարէր (Վասակ) զնուագսն ուրախութեան, մաշելով զերկայնութիւն գիշերայն յերգս արբեցութեան... քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական եւ զերգս հեթանոսականս»:

154 Բուզ. Դ. գլ. դ. «զմահ մարդկանն առանց դարձի միսանդամ կենդանանալոյ համարեցին, եւ անյուսութեամբ ի վերայ գնացելոցն օճիրս գործեցին լալեացն կոծոյն»: Այլուր ալ կը գտնենք նոյնը:

կատարելութիւնն ստացաւ միայն Յունաց եւ Հռոմայեցւոց մէջ: Այս բանաստեղծութեան սկիզբն այնպէս եղաւ, որ սկսուեցաւ աղգի դից եւ դիւցազներու գործերը ժողովրդեան առջեւ ներկայացնել: Նաեւ Հայոց մէջ որոշ աստիճան մը զարգացած էր բանաստեղծութիւնը, մանաւանդ թէ Պատմութիւնը կը վկայէ թէ Տիգրան Բ.ի ժամանակ թատրոններ կային ի Հայաստան, եւ թէ հայ թագաւորն իսկ Արտաւազդ գրած է թատերախաղեր յունական լեզուով: Սակայն այս ամէնն օտար պատմիչներու պատմածը հարկաւ ընիկ հայ ժողովրդական ներկայացմանց նկատմամբ չէ: Գէթ գիտենք որ «վիպասանաց երգ»երու բովանդակութիւնը կը ներկայացուէր հայ ժողովրդեան «գուսան»ներու ձեռքով, մանաւանդ թէ Խորենացի (Խ. Ա, գլ. ժդ) «գուսանական» կ'անուանէ, կը հետեւցուի թէ «առաջի ժողովրդեան ի հրապարակս ձեւացուցանէին դպարունակեալն յերգս վիպասանաց[155]»: Հինգերորդ դարու մէջ ալ Մանդակունի իւր ճառերուն մէջ գուսանաց եւ թատերց դէմ կը խօսէր, որով թատերաց գոյութիւնը կ'ենթադրէ: Սակայն հարկաւ խաղացողները յոյն էին եւ կամ 100 տարիէ մը ի վեր Յունաց ձեռքն եղած Հայաստանի արեւմտեան մասին մէջ տարածուած էին[156]», մանաւանդ թէ «այդ

[155] Այսպէս Մ. Էմին, Վէպք, էջ 96:

[156] Հ. Յ. Գաթըրճեան, Անգիր ժամանակ, էջ 29:

մի տեսակ հետեւողութիւն է… Ցունաց սուրբ հարց», որոնք միշտ Բիւզանդիոյ անառակ թատերց դէմ խօսած են. ուստի այս ճառին գոյութիւնը թատերց Հայաստան գտնուիլը չի կրնար դիւրաւ ցուցնել[157]: Միտ դնենք եւս որ դեռ կատարեալ ստոյգ չէ թէ այս ճառն Մանդակունւո՞յ է իրապէս թէ լոկ թարգմանութիւն մը յոյն կամ ասորի հեղինակէ, այնպէս ինչպէս Ոսկեբերանի թատերց դէմ գրած ճառերն ալ ունինք թարգմանուած: Հայկական երգերու տեսակներու վրայ աւելի տեղեկութիւններ կը պակսին, ինչպէս նաեւ այս վերջին տեսակներու հին հայ երգերու եւ ոչ հատակտոր մ՚ունինք:

Այս երգերը կ՚երգեցուէին ի հարկէ գործեաց ընկերակցութեամբ: Այս գործիքներու ձեւն ու ինչպիսի ըլլալն հարկաւ որ անծանօթ է մեզ: Բայց թէ Հայք ալ ունէին փչողական, լարական եւ թնդական գործիքներ՝ յայտնի է. այս երեք տեսակն հին ազդերու քով ծանօթ էր: Նախ փչողականներու կարգէն ի մէջ այլոց կը յիշուի սրինգ հովուական, որ հարկաւ ամենահին գործիքներէն էր, փող եղեգնեայ, որոնց այլեւայլ տեսակները քովէ քով դնելով ներդաշնակութիւն կը կազմուէր, անշուշտ այս է

157 Հմմտ. Մ. Միանսարեանց, Բնար Հայկական, Երգեր, էջ 45, ծնթ. 1:

երգիոն *կոչուածն առ Մամբրէի*[158], փող պղնձի[159] *անշուշտ եւ* եղջերեայ, *եւայլն*: Աղեաց *նուագարանք կամ գործիք ծանօթ են մեզ արդէն վերը յիշուած վկայութիւններու մէջ, այսպէս կը յիշուին* քնար, ջնար, վին, տաւիղ, փանդիռն *եւ վերջապէս Գողթան երգիչներու սիրելի բամբիռն: Չենք կարող դիւրաւ ըսել թէ ճշդիւ ի՛նչ տեսակ էին* քնարն *ու* ջնարն եւ վինը *են*, *բայց գլխաւորապէս խնդրոյ նիւթ է թէ ի՛նչ էր* բամբիռն, *որ Գողթնեցւոյ սիրական երգարանն էր*, *վասն զի միշտ կը յիշուի թէ «բամբռամբ երգէին»* Գողթնեցի *վիպասանները*: Հ. Գ. *Գաթըրճեան*[160] *այսպիսի մեկնութիւն կու տայ*, բամբ = *պարսկերէն* բամ (bam), *որ* բարձր *կը նշանակէ*, *ուստի բամբիռն*՝ բարձրաձայն *նուագարան մ՚ըլլալու է* աղեբախ: *Ուստի ընդունելի չէ ոմանց կարծիքն*՝ *որ բամբիռն* = ծնծղայ *կը դնեն*: *Ասոր ո՛չ դոյզն նշան է եւ այն յետինդարեան պատմիչ մը*[161] *Խորենացւոյ «բամբռամբ կը մեկնէ «ի կընտրնտոցահար աղեբախս»*, *որով ծնծղայ չի*

---

158 Մամբրէ վերծանող, *տպ. Վենետ.* 1833. *ճառ ի Յարութիւն Ղազարու* (*էջ* 47). *«Որպէս եւ* յերգիոնն *արուեստապետն ընդ մի բերանէ փչէ*, *եւ բազմութիւն* փողոցն *առ հասարակ գոչեն. ոմն սուկ, ոմն թաւ, եւ ոմն եւս թանձրագոյն, եւն»*:

159 *Խոր. Բ. գլ. կ*:

160 *Անգիր ժամանակ*, *էջ* 30: *Մ. Միանսարեաց*, *Երգեր*, 46:

161 *Յովհան կաթուղիկոս*, *տպ. Երուս.* 1843, *էջ* 14:

կ'րնար ըլլալ[162]: Իսկ փանդիռ յունական բառ է (Πανδοῦρα կամ Πανδουρὶς), որ ըսել է կիթառ երեքաղեան: Հարկաւ նաեւ չնար, վին, եւն, որոնք այժմ = քնար կը համարինք) իրարմէ տարբեր էին կազմու-թեամբ, լարերու թուով կամ ուրիշ կաղմով: — Վերջապէս բախողականաց մէջ կը յի-շուի ի մասնաւորի թմբուկ եւ ծնծղայ:

Այս երգերու հետ հարկաւ կապուած էին կաքաւներ, պարեր են, որոնց ինչ կամ ինչպէս ըլլալն հարկաւ անծանօթ է մեզ: Զարմանալին այն է որ նաեւ սուգի կոծի պարեր կային, եւ եղերամայրերու գլխաւոր գործերէն իրենց յատուկ կաքաւն ու պարը ընդ չըներ[163]: Կը յիշուին կաքաւf, կայթք, վարք, ցուցք եւ բազմութեամբ՝ պար կամ պարանցիկf[164]: Ստեփան Պալասանեան[165] այսպէս կը մեկնէ սոյն բառերը «կաքաւք» = «թռչոտելով պարել», «կայթք» = ոտները եւ ձեռքերը խփելով պար գալ»: Բայց դեռ մինչ մթին մեզ համար այս ամէնը կ'երեւայ թէ կայթf եւ վազf նոյն են, վասն զի Ագա-թանդեղոս[166] «կայթիւf վազելով» կ'ըսէ: Իսկ ցուցf այսպէս կը մեկնէ Էմին[167]». Ցուց

---

162 Հմմտ. Մ. Էմին, Վէպք, էջ 97—98:

163/164 Ագաթ. տպ. Վենետ. 1862, էջ 143 (ժէ) եւ այլուր:

165 Բանաւոր գրականութիւն, Թիֆլիս, 1865, էջ 174. Հմմտ. Քնար Հայկական, Երգեր, էջ 47:

166 Ագաթ. Անդ, տես ծանօթ. 5:

167 Վէպք, էջ 97: — Հմմտ. Մ. Մխանսարեաց, Քնար Հայկական, էջ 47, որ ի մէջ կը բերէ թէ «եր-գիչները ասեղիս, միեւնոյն ժամանակ պար էին գալի»:

բառի երկրորդ ձեւն է ցոյց, արմատ է բայիս ցուցանեմ, եւ նշանակէ գործողութիւն դուսանին, որով սա հանդիսացելոց զգործս որեւէ անձին ցուցանէ»: Ուստի «երգ ցցոց եւ պարուց» ոչ այլ ինչ յայտ առնէ բայց եթէ երգք դուսանաց եւ երգչաց՝ վէպս առողաց ժողովրդեան, ընդոքօք պարաւելոյ»: Շատ տարակուսական է այս, վասն զի թէեւ «ցցոց երգ» է «վիպասանաց երգոց» ներկայացուած, բայց ցուցք իրօք կաքաւ էր, ուստի երգիչք կը կաքաւէին եւ ոչ թէ լոկ կը պատմէին կամ կը ներկայացնէին վիպասանութիւնը: Ագաթանգեղոսի ալ յիշեալ կտորը կ՚ըսէ «կայթիւք վազելով՝ ցուց բարձեալ[168]»:

## § 16· ԵՐԳԵՐՈՒ ԱՐՈՒԵՍՏԸ

Այս երգերու արուեստն[169] մեզի համար գրեթէ գորդեան հանգոյց մըն է, բայց ի հարկէ որոշ կանոններու եւ չափի ենթարկուած ըլլալու էր· վասն զի անչափակցեալ երգ ենթադրել անհնարին է: Ուրիշ խնդիր է թէ կրնար ունենալ այս չափականութիւնն նաեւ շատ ազատութիւն, ինչպէս ունին արեւելեան ուրիշ ազգերու երգերն ալ: Ստոյգ է թէ հոս չենք կրնար փնտռել Արաբական տաղաչափութեան օրէնքները, որ այն ատեն դեռ եւ ոչ ծնած էր: Բայց գէթ

168 Հմմտ· այս ամէնուն համար Հ· Ց· Գաթըրճեան, Անդիր ժամանակ, էջ 29—31:

169 Հմմտ· Հ· Ց· Գաթըրճեան, Անդիր ժամանակ, էջ 31—43:

նմանութի՞ւն չունին յունական եւ լատինական բանաստեղծութեան, որոնց էութիւնն երկար եւ սուղ ձայնաւորներու վրայ է։ Այս խնդիր մըն է որ ոչ հաստատել, բայց եւ ոչ ժխտել կրնանք բացարձակ։ Եթէ այժմ ունեցած հատակոտորներէն դատենք, շատ դժուար է ենթադրել թէ հին դասական տաղաչափութեան օրէնքները ի զօրու եղած են, վասն զի ի՞նչպէս մեկնելու է դ.օ. հետեւեալ տողերը.
Երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն,
Նա հուր հեր ունէր.

Հոս երկար եւ սուղն ալ չի կրնար այս երկու բոլորովին անչափակցեալ տողերը իրարու գէթ համեմատական ընելու։ Բայց դժուարութիւնը հոս է ճշդիւ։ Գիտենք որ նախնիք բառերն եւ տողերն անանջատ կը գրէին. ուրեմն խնդիր է՝ արդեօք ուղի՞ղ տնատուած է եւ անդամատուած են այն հատակոտորները։ Այնպէս որ փորձ իսկ եղաւ բոլորովին նոր եղանակով անդամատել երգը[170]. բայց եւ այս յաջողութիւն չգտաւ։ Գուցէ թէ նաեւ ձեռագրաց փոփոխութիւն եւ աղաւաղմունք ալ եւ նաեւ Խորենացւոյ հատուկտիր միայն կոչումն ընելովն՝ այս երգերն նախնաբար բոլորովին ուրիշ կերպարանք ունէին։ Բայց թէ կար անոնց մէջն ալ չափականութիւն եւ համեմատականութիւն, յայտնի է անկէ ալ որ գործեօք երգերը կ'ենթադրէ չափ մը, այնպէս որ սոյն

170 Ստ. Մալխասեան, Արձագանգ, 1889, Թ. 17։

երգերու մէջ եղ եւ էջ մը հարկաւ ըլլալու էր, սակայն թէ ոչ ի՞նչպէս կաքաւի եւ նուագարանի կը յամարէին: Անշուշտ երկար եւ սուղ ձայնաւորներ ալ էական մաս մըն էին այս չափականութեան մէջ, վասն զի լեզուին իսկ էական ըլլալով՝ անհնար էր ոտնակոխ ընել այն օրէնքները. իսկ թէ մեր նախնիքները մեր տառերուն մէջ երկար, սուղ եւ միջին կը զանազանէին՝ յայտնի է եւ ստոյգ[171]: Թէ նաեւ շեշտի դիրքն այլազգ էր գրաբարի մէջ՝ հաւանական է: Արդի գաւառաբարբառներն իսկ շատ կը տարբերին այս կէտին մէջ գրաւորէն: Յիշելու արժանի է Ագուլիսի բարբառը՝ (= Գողթն հնոց), որուն կանոնն է՝ միշտ վերջընթեր վանկը շեշտել[172] եւն: Այսպէս ուրեմն այս երգերու արուեստը մեզի համար դեռ առեղծուած է:

Միայն այս մասին անդրադարձում մը եղած է թէ այս երգերը շատ կը նմանին հին Եբրայեցւոց երգերու եւ օրհնութեանց, այնպէս որ նոյն արուեստը կ՚երեւայ թէ ունին: Միտ դրուած է որ այս երկու երգերուն ալ էական յատկութիւնն է առաջին տողին մէջ ըսածը կրկնել նոր դարձուածներով յաջորդ տողերու մէջ եւ այս իմաստներն հիւսել եւ

[171] Բաւ է միայն յիշել՝ Կորիւն, տպ. 1833, էջ 10. «Զամենայն ընտրութիւնս նշանագրոյն զնրբագոյնս, զկարճս եւ զերկայնս, զառանձինս եւ զկրկնաւորս, միանգամայն յօրինեալ»: — Համմտ. նաեւ Արդի Քննական Քերակ. տպ. Վիեննա 1866, էջ 425 ։.:

[172] Տես Սարգիս Սարգսեանց, Ագուլեցոց բարբառ գոկերի լեզուն, Մոսկուա, 1883 (երկու մասն):

«դաշնակաւոր կրկնութիւններ ու աստիճանաւոր իմաստի յառաջադիմութիւն» մը կայ մէջ: Ահաւասիկ քանի մը տող, զորոնք համեմատենք մեր երգին հետ:

Երկնէր երկին եւ երկիր
Երկնէր եւ ծիրանի ծով
Երկն ի ծովուն ունէր
 զկարմրիկ եղեգնիկն.
Ընդ եղեգան փող
 ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող
 բոց ելանէր,
Եւ ի բոցոյն
 պատանեկիկ վազէր.
Նա հուր հեր ունէր.
Ապա թէ բոց ունէր
 մօրուս՝
Եւ աչկունքն էին
 արեգակունք:

Հողմով սրտմութեան քո
 պատառեցան ջուրք,
Պաղեցան որպէս պարիսպ
 ջուրք,
Պաղեցան ալիք ի մէջ
 ծովուն[173]...
Տէր յելանել քո ի Սէիրայ,
Եւ ի շուել քում յանդաստանաց Եդովմայ,
Երկիր շարժեցաւ,
Եւ երկինք խռովեցան...
Հեղեղատն Կիսոնի
 մերժեաց զնոսա,
Հեղեղատն Կատեսիմայ,
 Հեղեղատն Կիսոնի[174]:

Այս համեմատութիւնն յայտնի կը ցուցնէ թէ նոյն արուեստն է երկուքին մէջն ալ, ուստի եբրայական բանաստեղծութեան քննութիւնը լոյս կրնայ սփռել մեր երգերու վրայ ալ: Լաւ միտ դրուած է, որ այս երգերու «բուն ոյժը համեմատականութեան վրայ է», այսինքն «մէկ գլխաւոր իմաստ կամ մտածութիւն մը բացատրող երկու կամ շատ նախադասութիւններու կանոնաւոր կապակցութիւնն ու շարքը»: Այս նախադասութիւնները սովորաբար երկու քովէ քով կ'ըլլան,

---

173 Ելք. գլ. ԺԵ:

174 Դատ. գլ. Ե.: Հմմտ. վերը ծնթ. 137 դրուած տողն ալ:

ինչպէս յիշեալ երգին առաջին տողերը, բայց երբեմն նաեւ չորս տող գիրկընդխառն կը հիւսին իրարու հետ, ինչպէս է հատակոտորն (Թիւ 1 եւ 2): Վերջապէս լաւ միտ դրուած է նաեւ որ այս լծակցեալ նախադասութիւնները երկու եղանակով կը կապուին իրարու հետ, նախ՝ բաղադրական, այսինքն երկրորդ նախադասութիւնն առաջինին հաւասարազօր կ՚ըլլայ եւ չարունակութիւնն ինչպէս է սա տողը

Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն.

կա՛մ հակադրական եղանակով, այսինքն երկրորդ նախադասութիւնն առաջինին հակադրական կամ հակառակն է, բայց երկուքն ի միասին մէկ իմաստ կը կազմեն, այսպէս է՝

Թէ քո Շարայի որկորն է, մեր Շիրակայ ամբարք չեն:

Այսչափ միայն գիտենք հայ երգերու արուեստին վրայ եւ այն գլխաւորաբար Հ. Յ. Գաթըրճեանի քննութեամբը[175], որ

---

[175] Հ. Գարեգին Զարբհանալեան, Պատմութիւն Դպրութեանց, էջ 123—40 քաղուածոյք է լոկ Գաթըրճեան, Անդիր ժամանակ, էջ 31—43 էջերէն: Մ. Միանսարեանց, Քնար. Հայկ. Երգեր, էջ 57 արտագրած է լոկ Զարբհանալեանի ըսածը: Մ. Էմին չէ խօսած այս նիւթիս վրայ. իսկ Պալասանեան 130—131:

մի միայն է այս կէտին մէջ իւր սուր դիտողութիւններով:

## § 17. ԵՐԳԵՐՈՒ ԱՐՈՒԵՍՏԻՆ ՀՈԳԻՆ ԵՒ ԼԵԶՈՒՆ

*Երգերու* արուեստին *էական մաս մըն ալ է երգերու ներքին բանաստեղծական աւիւնը կամ* հոգին[176], *որ նաեւ մի քանի հատակոտորներու մէջ իսկ շատ գեղեցիկ կը փայլի, եւ եթէ համեմատութեամբ դատենք՝ բովանդակ գործը կամ վիպասանութիւնը շատ յղկուած եւ ճարտարագործ բան մըն էր, որ ամենայն իրաւամբ կրնար մրցիլ դասական ազգերու ամենաչքնաղ բանաստեղծական գրութիւններու հետ: Շատ իրաւամբ ըսուած է «կարծես թէ գծղխականին տեսանեմք առաջի ընկարագիր հելլենացի դիւցազանց[177]» այնպէս ողորկ ու ճաշակաւորն են նաեւ այս սակաւ* բեկորները: *Արեւելեան բանաստեղծութեան յատուկ գեղեցիկ նմանութիւններ բաւական յաճախ են մեր հատակոտորներուն մէջ*, Ծիրանի ծով, հուր հեր, բոց մորուս, աչկունքն էին արեգակունք, սեաւ (= *երիվար սեաւ*): *Ի՜նչ կիրթ ճաշակ է քաղաքի մը շինութիւնը բացատրել* «կոել կոփել զդուռն... արքայի»: *Բայց նաեւ բովանդակ նկարագրութեան վսեմութիւնն ու գողտր փափկութիւնը նշանաւոր,*

---

176 *Հմմտ. ասոր վրայ Հ. Ց. Գաթըրճեան, Անդիր ժամանակ*, էջ 39—43:

177 Նոյն, *Վէպք*, էջ 24: *Արդէն Տորքի գործերու Պողիփեմոսի քաջութեանց նման ըլլալը ցուցուեցաւ վերը* § 3 *ծնթ.* 116—117:

որ կը տեսնուին հատակոտորներու մէջ (Թիւ 1 եւ Թիւ 9)։ Բայց փոխաբերութիւն ու այլաբանութիւնն որ «Արեւելեան բանաստեղծութեան շունչն ու ոգին է», շատ գեղեցիկ կը փայլի մեր այս երգերու վրայ ալ, ուր երկինք եւ երկիր եւ ծովը կ'երկնեն, տեղ ոսկի եւ մարգարիտ կը տեղայ։ Վիշապաղունք գողացան զԱրտաւազդ եւ «դեւ փոխանակ եդին» այսինքն, ինչպէս սովորաբար կը մեկնուի «մոլի ըրին»։ Այլաբանութեան ալ հետքեր կը տեսնուին, մանաւանդ թէ կնիքն են մեր երգերուն։ Եթէ Խորենացւոյ համար, որ մեզմէ շատ աւելի լաւ գիտէր, բովանդակ Թիւ 1 հատուկտորն այլաբանութիւն է Վահագնի ծննդեան, Թիւ 2 այլաբանութեամբ կը նկարագրուի Արտաշիսի Սաթինիկը կնութեան առնուլն, «ձգեալ զոսկեօղ շիկափոկ պարանն» կը նշանակէ ըստ Խորենացւոյ կարմիր մորթոյ, ոսկւոյ եւն հրապոյրքը։ «Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս զարտախուր խաւարտ եւ զտից խաւարծի ի բարձից Արգաւանայ» կ'ուզէ նշանակել Սաթինկան անհաւատարմութիւնն եւ անկարգ սէրն առ Արգաւան, եւն։ Այսչափ կարելի է միայն ցայժմ ունեցած դոյզն նշխարներէն հետեւցնել. եթէ բախտն ունենայինք գոնէ քանի մ'աւելի ընդարձակ հատակոտորներ ունենալու, շատ բան շատ աւելի լուսաւոր կրնայինք իմանալ։

բ․ Երգերու լեզուն ճշդիւ նոյն է հինգերորդ դարու առաջին կիսուն լեզուին հետ,

այսինքն այն լեզուին, զոր ոսկեդարեան անուանել սովոր ենք եւ որուն նախ մտադիր ըրին Վիեննայի Հայրերը: Եւ այս կէտը միայն բաւական է որոշելու կեղծ Գողթան անուամբ չինուած երգերը, ինչպէս արդեամբ այսպիսի կեղծ երգ մը Հրատարակուեցաւ[178] ազգային լրագրի մը մէջ ձեռագրերու յիշատակարանէ մը օրինակուած, որուն կեղծ ըլլալն ակներեւ ցուցուեցաւ Եւրոպա թերթին մէջ[179]: Սակայն այս երգերու այլեւայլ ժամանակ եւ այլեւայլ անձանց յօրինած ըլլալովը՝ թերեւս կար բաւական տարբերութիւն գէթ ի՛նչ ինչ երգերու լեզուին եւ միւս երգերու ոճին մէջ, ճշդիւ այնպէս, ինչպէս զ. օ. Հոմերոսի մէջ յունական հին գաւառաբարբառները խառն հիւսուած են: Ունեցած հատակոտորոց մէջ այլ անսովոր ձեւեր կը նշմարուին. «Ընկէց ի մէջք», «ցուեցոյց զմէջք», բայց մանաւանդ «մեք փող հարուաք (= հարաք) եւ թմբկի հարկանէաք»: Բայց ո՞վ կրնայ երաշխաւոր ըլլալ թէ հարազատ եւ անաւաղ ընթերցմունք են այս, զոր անհրաժեշտ է ենթադրել՝ եթէ կ՚ուզուի այս եւ նման ձեւերէ հետեւութիւններ հանել: Զարմանալի է այնպիսի ձեւեր եւ բառեր ալ տեսնել որ մեր արդի լեզուին ընտելական, բայց

---

[178] Բանասէր, օրագիր, 1852, 240 եւ 388:

[179] Եւրոպա, շաբաթաթերթ, 1851, Թ. 33. Հմմտ. Հ. Յ. Գաթըրճեան, Անգիր ժամանակ, էջ 56—62:

գրաբար դասական լեզուին մէջ անսովոր կամ շատ ցանցառ գործածելի են, ինչպէս «ո՜ր տայր ինձ գծուխ ծխանի»· «աչկունքն էին արեգակունք» եւն։ Ընտանեկան լեզուն է «մինչ դու գնացեր, եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակաց ո՞րպէս թագաւորեմ», որ ճշդիւ այն դրոշմը կը կրէ վրան, զոր Բուզանդայ յիշած առտնին խօսակցութեան լեզուին նշխարաց վրայ կը տեսնենք։ Մտադրութեան արժանի է կարծենք կարմրիկ եղեգնիկ, պատանեկիկ նուագականները։

դ· Վերջապէս խնդիր մըն ալ։ Այս երգերը լոկ բերանացի՞ կ՚աւանդուէին յետնոց, չկա՞ր արդեօք նաեւ որեւէ թէեւ անկատար կերպով գրութիւն մը։ Պիտի պատասխանենք անշուշտ ո՛չ· վասն զի ի՞նչպէս գրուած կրնային ըլլալ։ Յունական կամ պարսկական գրով հայերէն գրելու աւանդութիւնը նոր դարուս տառասպելաց կարգը դնելու է· իսկ Հայոց այն «վաղնջուց» նշանագրաց վրայ տեղեկութիւն չունինք, բայց կրնանք ըսել որ անբաւական էին հայերէն ընդարձակ գործ մը գրի առնելու, ապա թէ ոչ նոր գրի գիւտի պէտք մը չկար։ Սակայն բան մը կը տատամսեցնէ զմեզ, Խորենացի[180] ի մէջ այլոց կ՚ըսէ սոյն երգոց համար «ի փոքունց ոմանց եւ յաննշանից արանց ի զուսանականնէն այս գտանի ժողովեալ ի դիւանի արքունեաց», կարելի՞ է ասկէ հետեւցնել թէ

180 Խոր· Ա· գլ· ժդ, տպ· Վենետ· 1843, էջ 33։

գրաւոր ալ կային այս դուսանականները: Մենք կարծենք թէ Խորենացին կ’ուզէր ըսել թէ այս դէպքերը ոմանք երգերէն քաղելով արձանագրեցին գրով արքունեաց դիւանին մէջ, որով ամենեւին չի հետեւիր այս խօսքէն երգերու գրաւոր ըլլալը: Կարծեմ ուղիղ մեկնութիւն չէ գուսանական բառին «երգ արձանագրեալ» նշանակութիւն տալ: Սակայն թէ ունեայ հինգերորդ դարու մէջ կամ աւելի վերջն չեղա՞ւ մէկը հաւաքիչ այս երգերու. չենք գիտեր, բայց հաւանական ալ չենք համարիր, նկատելով որ այնպէս խորշում կը զգային Հայք այս հեթանոսութեան յիշատակները նորոգող երգերէ:

## § 18. ԱՌԱԿՆԵՐ ԿԱՄ ԱՌԱԾՆԵՐ

Այս երգիչներու ազդեցութեամբն անշուշտ կազմուած են շատ մը գեղեցիկ առակներ[181], թէ շատերն ալ բնիկ ժողովրդեան արդիւնքն են: Առակներու նիւթը սովորաբար բարոյական է, բայց շատ անգամ ալ պատմական մեծ արժէք կ’ունենայ: Ժողովրդեան անգիր մատենագրութեան կը վերաբերին նաեւ առած, հանելուկ կամ առեղծուած, մաղթանք եւ անէծք եւ այլք: Հին Հայոց առակներէն ալ հազիւ քանի մը փշրանք ունինք, եւ այն ոչ այնչափ, որչափ Գողթան երգերէն մնացած է մեզ: Առաջին

181 Հմմտ. առակաց վրայ Հ. Ց. Գաթըրճեան, Անգիր ժամանակ, էջ 19—21:

առակը զոր Խորենացի[182] կը յիշէ՝ սա է. «Թէ քո Շարայի որկորն է, մեր Շիրակայ ամբարքն չեն»։ Այս առակը կը յիշէ Խորենացի այն առթիւ երբ կը պատմէ թէ Արամայիսի որդին Շարայ «յոլովածին եւ շատակեր» իւր հօրմէն ուղարկուեցաւ «ի դաշտ մի մօրաւոր, արգաւանդ եւ բարի, յորում գնան ջուրք ոչ սակաւք, ...յորոյ անուն եւ գաւառն ասեն անուանել Շիրակ»։ Զայս յիշելէն վերջը կը յաւելու «վասն որոյ արդաբանեալ թուի առասպելին, որ ասի ի մէջ գեղջկաց՝ թէ քո Շարայի, եւն»։ Այս առակին բաւական հնութիւն ունենալը՝ յայտնի է նաեւ իւր ամփոփ եւ կոկ ձեւով։ Շատ աւելի նորագոյն առակաց կերպարանք ունի երկրորդ մը զոր Ագաթանգեղոս[183] կը յիշէ, որ պատմելով Տրդատայ քաջութիւններն ու յաղթութիւնները, կը յաւելու թէ «վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս ի բանս կարգի առակաց թէ իբրեւ զսէգն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց, եւ ցամաքեցոյց իսկ ի սիգալ իւրում զյորձանս ծովուց»։ Յայտնի է որ այս վերջինը առաջնոյն ամփոփ եւ կտրուկ ոճը չունի. բայց ասոր պատճառը դուցէ Ագաթանգեղեայ գրիչն է։ Երրորդ նման առած մ'ալ Բուզանդայ քով կը գտնենք[184]։ Շապուհ Բ. Պապ Հայոց Թագաւորին դէմ, որուն օգնական էին

---

182 Խոր. Ա. գլ. ժբ. տպ. 1843, էջ 27։

183 Ագաթանգեղոս, տպ. 1862, էջ 103—104։

184 Բուզանդ, Ե. գլ. դ։

Հռոմայեցի գնդեր, պատերազմի ելած էր։ Աղուանից Ուռնայր թագաւորն Շապհոյ նիզակակից էր, Շապուհէն խնդրեց որ Պարսիկները Յունաց դէմ, իսկ ինքն ալ իր գնդով Հայոց դէմ պատերազմի։ Մերուժան ուրացեալ հայ իշխանն իմացաւ Ուռնայրի այս խնդիրքը եւ թէ Շապուհ հաւաներ է, եւ դարձաւ ըսաւ Ուռնայրի այս առակը «Աստ արկեր զգազին գիրկս. թէ ժողովել կարիցես մեծ զարմանք են»։ Գուշակութիւնը կատարուեցաւ. Հայք եղան յաղթող եւ Ուռնայր մազապուր կրցաւ հազիւ փախչիլ։

Այսպիսի առածներ կրնանք դեռ քանի մը հատ ալ հաւաքել նախնեաց գրոց մէջէն։ Անշուշտ ժողովրդական անէծք մ'էր այն, զոր Բուզանդ[185] Արշակայ բերանը կը դնէ։ Երբ, կ'ըսէ, Վաղէս զՄ. Ներսէս աքսորեց եւ անոր տեղ զՓնէլ եւ զՏիրիթ արձակեց եւ շատ մ'ալ պարգեւներ Արշակայ ուղարկեց։ Արշակ «անշնորհ առնէր զտալին եւ զբերելին կարասոյն», վասն զի զՆերսէս աքսորած էր եւ ըսաւ բարկութեամբ «Քարինք բադումք ի վրայ կայսերն, եւ ձեր ի բերելդ. քարինք եւ մեր շատ կան ի թափել զատամունս նորա ի տալն եւ ձեր ի բերելդ»։ Նոյն պատմիչն է[186] որ կը պատմէ թէ Շապուհ պարտուելով Մուշեղէն, նաեւ տիկնանց տիկինն եւ այլ կանայք գերի ընկան Մուշեղայ ձեռքը, որ պատուով ետ ուղարկեց զանոնք։

---

185 Բուզ. Դ. գլ. ժա։

186 Բուզանդ, Ե. գլ. բ։

Ծապուհ ասոր վրայ զարմացաւ եւ ի յիշատակ ասոր Մուշեղը նկարել տուաւ անոր «ճերմակ» ձիով հանդերձ իւր գինուոյ բաժակին վրայ, եւ գինուոյ «դաշտը» ձեռք երբ կ՚առնուր՝ յիշելով սոյն դէպքը կ՚ըսէր. «ճերմակաձին գինի արբցէ»: Լոկ բարոյական առածներ հարկաւ շատ բազմաթիւ էին, որ գրեթէ ամէն արեւելեան ժողովրդեան մէջ ալ բազմաթիւ են: Այսօր իսկ ռամկին բերանը քանի մը հազար առակներ, առածներ, հանելուկներ եւն կը պտտին, որոնց շատերն անշուշտ նախնիքներէն մնացած են: Թերեւս եթէ նախնեաց գրքերը պրպըտուէին, բաւական թուով առակներ եւ այլն կը գտնենք: Ցայժմ փորձ մը միայն է եղած զատոնք հաւաքելու[187]: Արդէն ոչ սակաւ այսպիսիներ կան միայն Բուզանդայ գրքին մէջ: Երբ Ս. Ներսէս Հայոց աշխարհաժողովին կաթուղիկոս ընտրեց, յանձն չէր առնուր ըսելով թէ «թակն գգլխոյ ձերմէ կոչկոճիչ կապէք գլխ[188]»: Անշուշտ ժողովրդական առած մըն էր, զոր Բուզանդ նախարարաց բերանը կը դնէ, որոնք կը տրտնջէին պատերազմներու վրայ եւ կ՚ըսէին «համակ սրով եւ սուրերօք եւ ի սլաքս եւ խռէզս նիզակաց զքըրտունս երեսաց մերոց ջնջեցաք», նոյնը դրած է Մուշեղի բերանն աւելի կարճ նախա-

---

[187] Հմմտ. Բազմավէպ, 1871. Յուլիս, էջ 223, ուր 23 առածք հաւաքեալ են:

[188] Բուզ. Դ. գլ. գ.:

դաստութեամբ[189]: Շատ գեղեցիկ են ժողովրդեան ասացուածներ, զոր օրինակ երբ խրատն ի գերեւ հանելու տեղ, կ'ըսէր. «Որպէս թակարդ զհողմս՝ անցուցանել զխրատս»[190]. անհնարին իրաց ետեւէ ըլլալը, կը բացատրէր «ի քարէ կաթն կթել[191]» կամ «ի վիմէ ասր ստանալ» գեղեցիկ առածներով. ի զուր աշխատիլ, կ'ըսէր, «Աղխս լուանալ[192]», «ի ծակ կարաս(ջուր)... կրել[193]», «զխեցի կարկատել[194]». «Թակարդաւ ջուր բերել[195]» եւ մանաւանդ «ի հուր գզել եւ ի ջուր աղալ[196]», որոնք աննման գեղեցիկ առածներ են: Խրատը խստութեամբ մերժել կ'ըսէին այսպէս. «Զբեւեռ բեւեռով

---

189 Բուզ. Դ. գլ. ծա. երկրորդ կարճը՝ Բուզ. Ե. գլ. լե. «ի վերայ... սլաքօքն զքիրտն ջնջելոյ, ա՞յս հատուցումն եղեւ ինձ»:

190 Յաճախապատում, տպ. Վենետիկ 1954, ճառ Ժ. էջ 114:

191 Մանդակունի, տպ. Վենետ. 1860. ճառ ԺԶ: ՀԲ. տ. կթել:

192 Տես ծնթ. 10:

193 Ոսկ. Մեկն. Մատթէի, տպ. Վենետ. Հտր. Ա. էջ 68:

194 Սիրաք, ԻԲ. 7. «Զխեցի կարկատէ, որ ուսուցանէ զյիմարն»:

195 Փիլոն, Գիրք լինելութեան. «Զոյգ է ըստ առակին ասացեալ, Աղխս լուանալ, եւ կամ Թակարդաւ ջուր բերել, զչարութիւնն ի բաց հանել ի մարդոյ ոգւոյն»: Հմմտ. Նոր Բառգիրք Հայկազն. Հտ. Ա. էջ 793. ի բառն «Թակարդ»:

196 Մանդակունի, տպ. Վենետ. 1860, ճառ Գ. (էջ 34):

*թափել»[197]. մէկը պատրել կամ ձեռք ձգել. «ի մատնանեակ արկանել[198] զոք» կամ «կապել ի ճկոյթ[199]»։ «Զամենայն Շարժել զամենայն քար[200]» այսօր ալ ծանօթ է. «զհետ լինել խորշակի» կը նշանակէ իւր իսկ փնտռել[201]։ Բնականապէս այս եւ այլ առածներէն ոչ ամէնը բնիկ հայ ժողովրդեան բերնէն է, վասն զի շատ բան լոկ օտար բնագրի արգեցութեամբ եղած է, այսպէս երբ փոխանակ «քու խնամոցդ յանձնեցի» ըսելու կը կարդանք «Թողի զխաշինս իմ յաջ բազուկ քո եւ յաջ ակն քո» — այս լոկ թարգմանութիւն բնագրին է։ Բայց մեզ համար նաեւ առնք յարդ ունին մեծապէս, եւ ցանկալի էր որ հաւաքուէին այսպիսի առածները, որոնց մեծ մասն ալ դեռ կենդանի է նոր ժողովրդեան ալ բերանն աշխարհիկ լեզուով։ Բայց*

---

197 Եւագր, ճառ Ժ. «Որպէս եւ առեն ի բանից կարգի, բեւեռով զբեւեռ թափել»։

198 Ոսկ. Մեկն. Մատթէի. տպ. Վենետ. Հատ. Գ. ճառ ԼԳ. էջ 124։ Կայ նաեւ «ի մատնեակ արկանել», Սեբերիանոս, տպ. Վենետիկ, 1890. ճառ Դ. էջ 66։

199 Հարանց Վարք, տպ. Վենետիկ. 1855. ԺԶ. «Կապեաց զամենայն Սկիտէ... ի ճկոյթն իւր»։

200 Սոկրատ, Պատմութիւն, Ա. 2. հմմտ. Բառգիրք Հայկազ. Բ. էջ 475 «Շարժել»։

201 Ծանօթ են նոյնպէս «խօղի հարսնացելոյ՝ կոյաջուր բաղնիք». «Ցականէ աղբերն պղտորեալ է ջուր նորա». «ընութեամբ բանն ի հուն չելանէ» (Ոսկեփորիկ), «սարդխոստայն ձգես իբրեւ ծածկոյթ զերեսօք», այսինքն յայտնի յանցանքը պատրուակել են։

Նոր անգլիր մատենագրութեան վրայ յետոյ պիտի խօսինք:

## § 19· ԶՐՈՅՑՆԵՐ

Գողթան երգերու կամ հայ վիպասանութեան անբաժին ընկեր է զրոյցը, որ է արձակ պատմութիւն մը բերնէ բերան աւանդեալ ժողովրդեան մէջ, թէպէտ եւ զրոյց հայ լեզուի մէջ ուրիշ նշանակութիւն ալ ունի: Զրոյցները սովորաբար մտացածին տարրներ շատ կ'ունենան իրենց մէջ, անոր համար պատմական յարգի կողմանէ երգերէն ետքն են, վասն զի երգը դժուարաւ կրնայ փոփոխուիլ իր ձեւն որոշ ըլլալով, (այսինքն վասն զի չափով եւ ոտանաւոր է), բայց զրոյցն արձակ ըլլալով դիւրաւ կը փոփոխուի եւ յաւելուածներ ու զարդարանքներ կ'առնու: Զրոյցը գլխաւորաբար երկու տեսակ է, առաջինն աւելի անխառն պատմական եւ որոշ անձի ու ժամանակի հետ կապուած է· (զրոյց յանձուկ մտօք = die Sage) եւ երկրորդ աւելի մտացածին, ոչ որոշ անձի եւ ոչ որոշի ժամանակի[202], այլ չփոթ պատմութիւն մը զարմանալեօք (= «հէքիաթ» = conte, Märchen), այս վերջին

[202] Նոր զրոյցները մեծաւ մասամբ «կար ու չկար», «Եղեր է ու չէ եղեր» եւ նման սկզբնաւորութեամբ կը սկսին առանց թուոյ ժամանակի, տեղւոյ եւն: Մ· Մխանսարեանց (Քնար Հայկական, Երգեր, էջ 3) այս ձեւը «հին ժամանակներից» մնացած կը համարի:

տեսակը կ'անուանենք նաեւ բանն եւ առասպել, թէեւ այս վերջին բառը շատ նշանակութիւններ ունի, ի մէջ այլոց հայ վիպասանաց երգերն ալ «առասպելք», «երգառասպելաց» եւ նաեւ լոկ «առասպել» կը կոչուին: Մ. Էմին[203] առասպել բառին նախնական իմաստը կը համարի «պատմութիւն, յորում նախնի ազինք այլաբանօրէն զճշմարտութիւն աւանդէին (= Mythe, Fable): — Զրոյցը կը ծնանի ժողովրդեան մէջ եւ սովորաբար չի գիտցուիր հեղինակն եւ եթէ ընդունելութիւն գտնէ, որչափ ընդարձակի՝ այնչափ ալ փոփոխութեանց տակ կ'իյնայ: Միեւնոյն զրոյց երբեմն ըստ տեղեաց բազմաթիւ կերպարանք կը ստանայ: Զրոյցը կամ տեղական է, այսինքն քաղաքի մը կամ հասարակութեան մը յատուկ կամ ազգային, բովանդակ ազգին մէջ ծանօթ, եւ շատ անգամ միեւնոյն զրոյցն օտար ազգերու քով ալ կը գտնուի:

Հայոց մէջ ալ հարկաւ զրոյցներու բազմութիւն մը պիտի ըլլար եւ գիտենք որ կար արդեամբ, եւ դեռ ցայսօր հայ ժողովրդեան բերանը անգիր զրոյցներու եւ «հէքիաթ»-ներու լեղէոն մը կայ: Նորին վրայ յետոյ կը խօսինք, իսկ հնին վրայ շատ քիչ բան ունինք ըսելիք, վասն զի հազիւ քանի մը բեկորներ մեր ձեռքը հասած են: Բայց նշանաւոր է Խորենացւոյ այս խօսքը[204]. «այժմ

---

203 Էմին Մ., Վէպք, էջ 8:

204 Խոր. Ա. գլ. ր. տպ. 1843, էջ 7:

գիւղից եւ գաւառաց եւս եւ իւրաքանչիւր տանց, եւ հանուրց հակառակութեանց եւ դաշանց առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեփհական ազատութեան պայազատութիւն»: Այս խօսքը կը ցուցնէ որ զրոյցներու հարուստ հաւաքածոյ անգամ կար գոնեայ հինգերորդ դարէ յետոյ, եւ թէ այս զրոյցներու գլխաւոր նիւթը գիւղերու քաղաքներու եւ նաեւ տոհմական տներու ու դէպքերու վրայ էր, բայց մանաւանդ նախարարաց ցեղերուն եւ իշխանական տուներու պատմութեան բազմաթիւ զրոյցներ կային: Այսօր ալ հին քանի մը նախարարական ցեղերու (դ. օ. Արծրունեաց) նախնական պատմութեան երկայն զրոյցներու շղթայ մը կը գտնուի Մասնոյ Հայոց բերանը: Տեսնենք քանի մը զրոյցները:

1. Խորենացի «անգիր հին զրոյց»[205] մը կը պատմէ, որ «հասին մինչեւ առ մեզ այս զրոյցք ի Գորդի եւ ի Բանան անուն կոչեցելոց... «եւ ի մէջ կը բերէ Ոլիմպիոդորոս անուն փիլիսոփայի մը պատմածը, որ սորված էր զայն «զրոյցս անգիրս յաւանդութենէ ի մեզ հասեալ» եւ պատմէ թէ Քսիսութրեայ որդւոյ մին (Սիմ անուամբ) կ'երթայ Հայաստանի վարի կողմերը եւ կը բնակի «առ գետովն երկլուսնեայ աւուրս. եւ անուանէ յանուն իւր զլեառն Սիմ»: Իր որդւոյ մին ալ Տարբան նոյն տեղը կը բնակի,

205 Խոր. Ա. գլ. զ. էջ 17—18:

որով այն գաւառն Տարօն կը կոչուի եւ բնակած տեղը Ցրօնս եւ կը յաւելու Խորենացի «կողմանք արեւելից Ջրուան զՍիմ կոչեն եւ Ջարուանդ գաւառն»։ Ահաւասիկ հին հայ զրոյց մը, թէեւ Խորենացի զայն ուղղակի Ողիմպիոդորայ բերնէն կը դրէ, բայց կը յաւելու «հինքն արամազնեայց ի նուագս բամբռան եւ յերգս ցցոց եւ պարուց փայտսիկ յիշատակեն։ Եւ այսոքիկ զրոյցք սուտ կամ թէ արդարեւ լեալք, մեզ չէ ինչ փոյթ»։

2. Թէ Հայկայ քաջութեանց վրայ զրոյցներ կային արդեամբ կը հետեւցնենք (բացի վերը վիպասանաց համար բսուածէն) նաեւ անկէ որ Խորենացի Հայկայ պատմութիւնը պատմելով՝ երկու տեղ կը յաւելու[206]. «Այս արդարացուցանէ զանգիր հին ասացեալ զրոյցս»։ — Ցեղական զրոյցներն մինչեւ այսչափ հին ժամանակ կը հանէին իրենց ցեղերն, այսպէս Գեղամայ օրերով կար Վարժ անուն պատանի մը եւ «ի սմանէ ասեն լինել զազգն Վարաժնունի[207]»։ Հարկաւ այս Վարաժնունեաց զրուցի մէջէն քաղած է Խորենացի Վարժի սորագրութիւնը «աջող յորս եղջերուաց եւ այծեմանց եւ վարազուց, դիպաձգութեամբ նետից կորովի եւն»։ — Արամայ գործքերն ալ կային զրոյցներու մէջ[208], եւ արդէն «ի ծայրս աշտարակի պարապին ցից վարեալ երկաթի ընդ ճակատն,

---

206 Խոր. Ա. գլ. ժ. էջ 22, 36 եւ 23, 10։
207 Խոր. Ա. գլ. ժբ. էջ 29։
208 Խոր. Ա. գլ. ժդ. էջ 33, 20 եւն։

յորմն վարսել» գնիւքեար՝ ճչդիւ արեւելեան գրոցներու նկարագիրը կը կրէ։

3. Խական մաս մըն էր Հայ գրոցներու Արայի գրոցը։ Խորենացի կը պատմէ որ Արայ պատերազմի մէջ ինկաւ եւ Շամիրամ անոր դիակն «ապարանից վերնատան» մէջ դնել տուաւ ըսելով «Հրամայեցի աստուածոցն իմոց լիզուլ զվէրս նորա եւ կենդանասցի»։ Եւ յետոյ «համբաւէ» թէ «լիզեալ աստուածոցն զԱրայ եւ կենդանացուցին[209]»։ Խորենացի կը վկայէ, այս գրոյցը տարածուած էր Հայոց մէջ եւ արդեամբ մինչեւ օտար ազգերու մէջ սփռուած էր այս համբաւը, ինչպէս տեսանք էր հայուն վրայ Պղատոնի պատմածը[210]։ Հայոց կրօնական համոզումն ալ այս էր, թէ քաջերուն վէրքերը կը լզեն աստուածները եւ կը կենդանացնեն. այս աստուածներն էին «արալեզք»։ Հինգերորդ դարու մէջն իսկ՝ քրիստոնէութեան մուտք գտնելէն ետքն ալ՝ այս գաղափարները սեւեռեալ կային Հայոց եւ այն նաեւ ազնուականներու մէջ։ Բաւ է յիշել Բուզանդայ պատմած մէկ մանրավէպը[211]։ Մուշեղ Մամիկոնեան սպանուած բերին իւր ընտանեաց, բայց անոնք չէին հաւատար որ մեռած ըլլայ, «թէպէտեւ տեսանէին զգլուխ նորուն զատ ի մարմնոյն անտի»։ Կը յաւելու Բուզանդ իւր ոսկի լեզուաւ «Զի ասէին.

---

209 Խոր. Ա. գլ. ժե. էջ 35։

210 Տես վերը § 13։

211 Բուզանդ, Ե. գլ. լզ։

Դորա յանթիւ ճակատ մտեալ էր, եւ վէր երբեք չէր առեալ, ոչ նետ մի դիպեցաւ երբեք, եւ ոչ այլոց զինու խոցեալ է զդա: Իսկ կէսք յառնելոյ ակն ունէին նմա, մինչեւ զգլուխն անդէն ի կոճեղն կարեալ կցեցին. եւ հանին եղին ի տանիսն աշտարակի միոյ. ասէին թէ վասն զի այր քաջ է, Առլէզք իջանեն եւ յարուցանեն զդա»: Կը յաւելու թէ «պահապան կային եւ ակն ունէին յառնելոյ», մինչեւ որ նեխեցաւ: Նաեւ Եզնիկ ստիպուած էր այս աւելորդապաշտ կարծեաց դէմ գրել[212] որ մեծ լոյս կը սփռէ այն ատենուան հայ ժողովրդեան կարծեաց վրայ, բայց ասոր վրայ քիչ մ'ետքը:

4. Խորենացի ի մէջ այլոց կը պատմէ Ադրամելայ եւ Սանասարայ Հայաստան փախչիլը եւ կ'ըսէ Սանասարայ տունը Սիմ լեռը բնակեցաւ: Ասոնք վերջէն նախարարութեան բարձրացան եւ եղան երկու գլխաւոր նախարարութիւններ՝ Արծրունիք եւ Գնունիք[213]: Նոր քննադատութիւնը[214] այս կտորը Խորենացւոյ մտաց գիւտ համարեցաւ, ըսելով որ Խորենացի Սանասար եւ Սիմ անուանց նմանութենէ միայն ստեղծեր է այս վէպը: Բայց Խորենացի կամ գրաւոր յիշատակարանէ մը քաղած է կամ լաւ եւս ազգային զրոյցներէ, թէեւ հոս չէ յիշած զանոնք: Սասունցոց բե—

212 Եզնիկ, Եղծ աղանդոց, տպ. Վենետ. 1826, էջ 99—100:

213 Խոր. Ա. գլ. իգ:

214 Ա. Մ. Գարագաշեան, Քննական Պատմութիւն Հայոց. Կ. Պ. 1880, էջ 170—173:

*բանը պատող ընդարձակ եւ հին «Սասունցի Դաւիթ»*[215] *անգիր վէպը կը հաստատէ այս կարծիքը։ Այս Նորագիւտ «վիպասանաց երգ»ին վրայ յետոյ կը խօսինք։*

5. *Արծրունեաց ցեղաբանութեան գրոյցը Համառօտիւք կը յիշէ Խորենացի*[216]*։ Այս գրոյցի համեմատ «նահատակութեան ժառանգ» մանուկը Հաղամակերտի մէջ քնացած էր։ Անձրեւ եւ արեւ սկսան իրարու հետ մրցիլ որ վնասեն այս մանկան, բայց «արծիւ»ը*[217] *թեւերը բացած հովանի եղաւ եւ պատսպարեց մանուկը։ Այս գրոյցը թերեւս երգերու մէջ ալ կար, վասն զի Խորենացի* «առասպելաց *բաջաղանք» կ'անուանէ զայն։ — Զենք գիտեր երգերո՞ւ թէ գրոյցներու է Արտաշիսի արշաւանքի եւ զօրքի բազմութեան*[217] *նկատմամբ ըսուածը թէ անթիւ էին եւ համարելու համար «յանցս եւ յիջեւանս քար ըստ մարդաթուի կարկառ՝ նշան բազմութեան» կը թողուր։*

6. *Սանատրկոյ վրայ ալ գրոյցներ կային,*

---

[215] *«Սասունցի Դաւիթ» կամ «Մհերի դուռ», հրտ. Գ. Սրուանձտեանց, Կ. Պ.* 1874 *եւ Նոր հաւաքում մ'ալ ժողովրդեան բերնէն՝ «Դաւիթ եւ Մհեր» հրտ. Ծուչի,* 1889։ *Հմմտ.* Մ. Աբեղեան, *Ազգային վէպ, քննութիւն Գ.* (Մուրճ, *Ա* (1889) *Թ.* 10, *էջ* 1601—1608, *մասն. էջ* 1605)։

[216] *Խոր. Բ. գլ. է։*

[217] *Խոր. Բ. գլ. է «հովանի թռչնոյ» կ'ըսէ, բայց բովանդակ խօսքին կապակցութիւնը կ'իմացնէ որ «արծիւ» էր այն «թռչունը», որմէ «Արծրունիք» կոչուեցան, կ'ըսէ Խորենացի։*

*որոնց մին յիշած է Խորենացի[218]։ Սանատրուկ մանուկ Օդէի հետ եւ իր Սանոտոյ ստնտուին եւ այլոց հետ ճանապարհորդած ժամանակ, ըերանց մէջ բուքի կը պատահի եւ կը ցրուին իրարմէ։ Դայեակը Սանատրուկը պահեց ձիւներու մէջ երեք օր եւ երեք գիշեր։ Կը յաւելու Խորենացի «զորմէ առասպելաբանեն, եթէ կենդանի խմն նորահրաշ սպիտակ յառուածոյն առաքեալ՝ պահէր զմանուկն»։ Եւ յետոյ կ՚ըսէ թէ այս «նորահրաշ սպիտակ կենդանին» ուրիշ բան չէ բայց թէ խնդրակաց շունը, որ գտնունք ձիւներու մէջ փնտռելով գտաւ եւ իր տաք շնչովը արթնցուց[219]» այն կխամեռ սառուցեալները։ Անշուշտ Եւրոպայի մէջ ծանօթ բեռնարդեան շուներու պէս շուներ ալ կային ի Հայս[220], ուր հիւսք եւ բուք շատ բազմաթիւ են։ Ըստ Ստրաբոնի[221] Հայ ճանապարհորդները հիւսան տակ մնալու ատեն երկայն գաւազանաւ ծակ կը բանային շնչառութեան եւ անցաւորաց օգնութիւն խնդրելու համար։*

*7. Զրոյցներու երկայն շղթայ մը կար Երուանդայ եւ իր գործոց վրայ, եւ անշուշտ սանոցմէ ալ քաղած է Խորենացի*

---

218 *Խոր. Բ. գլ. լգ։ Խորենացի կը յաւելու որ Սանատրուկ այս պատճառաւ կոչուեցաւ, իբրեւ «Սանոտոյ տուրք»։ Այս եւ նման ստուգաբանութեանց քննութիւնը տեղւոյս չէ։*

219 *Այսպէս կը հասկնայ Հ. Յ. Գաթըրճեան, Անգիր ժամանակ, էջ 54։*

220 *Անդ։*

221 *Ստրաբոն, Աշխարհագրութիւն, Գիրք ԺԲ.։*

(Բ. գլ. լէ—խթ) = Յայտնի զրոյցներ կը յիշէ արդէն ի սկզբան[222] «Ունին զրոյցք յաղագս նորա այսպէս: Կին ումն յազգէ Արշակունեաց, անձամբ խարատի եւ խոշորադեղ, վարար, զոր ոչ ոք դիմադրաւեաց առնուլ կնութեան, ծնանի երկուս մանկունս»: Երուանդայ պատմութեան մէջ կան քանի մը շատ գեղեցիկ նկարագրութիններ[223], զորոնք թերեւս քաղուածաբար ընդօրինակած է զրոյցներէ կամ վիպասաններէ: Բայց յայտնապէս զրոյցի մաս է հետեւեալը[224]: Երուանդ դժնեայ «ական հայեցուած» ունէր «ըստ հմայից», ուստի արքունի ծառաները սովորութիւն ունէին «ընդ այգանալ աշալըրջայն... վէմս որձաքարս ունել ընդդէմ Երուանդայ, եւ ի հայեցուածոյն դժնութենէ, ասեն, պայթել որձաքար վիմացն»: Նոյն զրոյցներն են որ կը ստորագրեն Երուանդաշատի ճարտարագործ դռներն ու սանդուխները գաղտնի որոգայթներով, այնպէս որ գաղտնի եկել ուղողը որոգայթի մէջ կ'իյնար եւ այս սանդուխը «երկդիմի» էր, մին ցերեկը գործածելու եւ միւսը գիշերը[225]: Այս նկարագիրը կը յիշեցնէ պարսկական եւ արաբական վէպիկները՝ որ ցայսօր նաեւ հայ ժողովրդեան բերանը կ'աւանդուին: Երուանդեան զրոյցներու մասն է եւ Դիմաքսեանի

222 Խոր. Բ. գլ. լէ, էջ 115, 6:

223 Այսպէս՝ Խոր. Բ. ԽԲ, էջ 119 Երուանդակերտի չքնաղ նկարագրութիւնը:

224 Խոր. Բ. գլ. խբ:

225 Խոր. Բ. գլ. լթ:

*վէպը, այսինքն թէ Երուանդայ եւ Արտաշիսի տուած ճակատին մէջ Գիսակ Դիմաքսեան ցեղին նախահաւը, Երուանդայ «քաջք տարուցիք» Արտաշիսի կեանքը վտանգի մէջ կը դնեն, բայց Գիսակ մէջ մտնելով կ'ազատէ, սակայն իր «դիմաց կէս»ը սրով կը կորուի*[226]*: Այս դործերը պատմելէն ետքը Խորենացի կը յաւելու սա նշանակալից տունը*[227] *«Զայս մեզ ստուգապէս պատմէ Ողիւպ քուրմ Հանւոյ, գրող մեհենական պատմութեանց, եւ դայլ բազում գործս՝ զոր աւել կայ առաջի, որում եւ Պարսից մատեանք վկայեն եւ Հայոց երդն վիպասանաց»: Ասոնց վրայ յետոյ կը խօսինք, առ այժմ միայն մտադիր կ'ընենք որ «վէպց»ները նաեւ եւ «երգ»երը շատ անգամ միեւնոյն նիւթն ունէին:*

8· *Նշանաւոր է Արտաւազդայ վէպը: Արտաւազդայ գործերը Գողթան երգերու մէջ կարեւոր տեղ կը բռնէին, ինչպէս տեսանք, որ կը պատմէին թէ ինչպէս անիծեց զԱրտաւազդ Արտաշիսի սուրերը: Պատմութիւնն ալ կը յաւելու*[228] *թէ որսի ելած էր Արտաւազդ Գինայ աղբերականց կողմերը եւ խելացնորելով վիհ մ'ընկաւ աներեւոյթ եղաւ: Բայց վրոյցը*[229] *կը յաւելու. թէ այրի մը մէջ կապուած է Արտաւազդ երկաթի շղթայով եւ երկու շուն կը կրծեն զայն, որ*

---

[226] *Խոր· Բ· գլ· խզ· եւ խէ:*
[227] *Խոր· Բ· գլ· խը·* *էջ* 126:
[228] *Խոր· Բ· գլ· կա,* *էջ* 138:
[229] *Խոր· Բ· գլ· կա,* *էջ* 139:

*ելլէ եւ վախճան բերէ աշխարհի*[230]*. բայց կը զօրանան չղթայք երբ դարբինները կռանը սալին կը զարնեն: Խորենացին կը յաւելու թէ դարբինները հաւատալով առոր միաշաբաթի օրերն ալ երեք չորս անգամ կը բաղխեն սալը, «զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ»: Այս զրոյցը կը յիշէ նաեւ Եզնիկ*[231] *քիչ մ'այլայլութեամբ, այսինքն Արտաւազդ պիտի ելլէ, ոչ թէ աշխարհքն աւերելու, այլ աշխարհի տիրելու համար: Այս զրոյցը անցած է նաեւ Վրաց*[232]*, բայց բաւական կերպարանափոխ եղած, կին մը, կը պատմեն, ճամբան ծնանելով տղայ մը Ամիրան անուանեց զայն, որուն տրուեցաւ Աստուծմէ արտաքոյ կարգի զօրութիւն: Ասիկա հպարտացաւ իւր զօրութեան ու ըրած քաջութեանց վրայ եւ մինչեւ եւ Աստուծոյ դէմ ելաւ՝ «ի պայքար կոչել»: Բարկացաւ Աստուած եւ զԱմիրան Կովկասու մէջ*

---

230 *Այլեւայլ ձեռագրաց մէջ կայ այս զրոյցն ուրիշ պարագաներով, այսինքն Արտաւազդ անուամբ հայ թագաւորին որդին էր Տիգար, որ սոյն դժբախտութիւնները կրեց: Տիգարայ շղթայքն այնչափ կը կրծեն, որ «ի տարեկիցն ի մազն գայ որ թէ կորի նա ելցէ եւ զաշխարհս անցուսցէ»: Ուստի կախարդք որոշեցին որ տարեմուտին օրն ամէն արուեստաւոր երեք անգամ «կոփէ»: Այս զրոյցն հրատարակեց նաեւ* Բազմավէպ, 1877, *էջ* 276:

231 *Եզնիկ, էջ* 105. *«Մոլորութիւնն դիւաց խաբեաց* զգիւցապաշտս *Հայոց, եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ իցէ* դիւաց*, որ ցայժմ կենդանի կայ, եւ նա ելանելոց է եւ* ունելոց *զաշխարհս»:*

232 *Տես Մ. Էմին, Վէպք, էջ* 41—42:

երկաթի շղթայիւք կապեց ու փակեց, եւ միայն իւր հաւատարիմ շունը կը լզէ Ամիրային շղթայն, որ ելլէ։ Բայց Աւագ հինգշաբթի օրն «ի խորոց երկրի» կ՚ելլէ դարբին մը որ այն բարակցած շղթայն բախելով կը զօրացնէ եւ անհետ կ՚ըլլայ եւ այսպէս Ամիրան անզերծ կը մնայ։ Տարակոյս չկայ որ այս վրականը հայկականէն առնուած եւ շատ ուշ եւ արդէն քրիստոնէական գոյն տրուած է, մինչդեռ հայկականը հեթանոսական դրոշմ կրելով իւր հնութիւնը կը ցուցնէ։ Եզնիկ, ինչպէս տեսանք, հեթանոս Հայոց կուտայ այս զրոյցը։ Սակայն զարմանալի է այս զրուցին Պրոմեթէոս եւ Սիւսիփոսի զրոյցներու հետ ունեցած ակն յանդիման նմանութիւնը[233]։

9. Յիշենք վերջապէս քանի մը զրոյցներ ալ, որոնք առաջիններու չափ հնութեան երաշխաւորութիւն չունին։ Շիրակացի[234] կը պատմէ Հայոց զրոյց մը, որուն համեմատ՝ Վահագն ձմեռ ատեն Բարշամ Ասորեստանցւոյն յարդը գողցաւ եւ տանելու

---

233 Պրոմեթէոս աստուածներէն կրակ գողցաւ եւ անոր համար պատիժ առաւ 30·000, որ անգղ մը լեարդը կրծէ եւ չսպառէ, այլ ամէն գիշեր նորէն աճի։ Իսկ Սիւսիփոս Կորնթոսի թագաւորն էր եւ Տարտարոս դատապարտուած, եւ Սանդարամետէն հրաման առած էր որ մարմարեայ ժայռ մը լեռնէ վեր հանէ։ Հազիւ ծայրը կը հասնի՝ աներեւոյթ ձեռքը մը վար կը գլորէ ժայռը, որով նորէն կը սկսի աշխատիլ։ Հմմտ. Անգիր ժամանակ, էջ 53—54։

234 Շիրակացի, Աստեղարաշխ. Հ. Բ. Յարդգող։

ատեն թափած մղեղները կազմեցին Ծիր Կաթինը, ուստի (կը յաւելու Շիրակացի) մենք ալ «Ցարդգողի հետ» կ'անուանենք ծիր կաթինը: Այս զրոյցը տարակոյս չկայ որ բաւական հնութիւն ունի, բայց այս ձեւին մէջ չէ շատ հին եւ ոչ նախնական զրոյց կրնայ ըլլալ, վասն զի ժամանակագրական վրիպակաւ Բարշամ եւ Վահագն ժամանակակից կը դնէ, ուստի յայտնապէս աղաւաղումն է հին զրուցի մը[235]: Ծիր կաթինն արդեամբք Ցարդգող կ'անուանենք: —

Զեմ գիտեր որչափ հնութիւն ունի երկրորդ զրոյցը, զոր Ինճիճեան[236] յառաջ կը բերէ եւ զոր Մ. Էմին[237] «նախնի զրոյցք» կ'անուանէ: Այս զրոյցին համեմատ Նոյայ տապանը կը ծփար ջրոյ վրայ եւ կը հասնի Հայաստանի Գրգուռ լերան եւ կ'ըսէ «Գըրգուռ, ա'ռ զիս», բայց այն ալ պատասխան կուտայ «Գնա ի Մասիս, նա բարձր է քան զիս»:

10. Թէ այսչափ չէր միայն հայ զրոյցներու թիւը՝ ստոյգ է[238]: Բայց ինչպէս ըսինք հայոց զրոյցներու վրայ մանրամասն տեղեկութիւն չունինք, եւ ոչ իսկ քիչ

---

235 Հմմտ. Հ. Յ. Գաթըրճեան, Անդիր ժամանակ, էջ 48, ծ. 1:

236 Հ. Ղուկ. Ինճիճեան, Նոր-Հայաստան, Վենետիկ, 1808, էջ 178:

237 Մ. Էմին, Վէպք, էջ 43:

238 Հմմտ. Խոր. Բ. գլ. հե. «ի համբաւուց առանց իմաստնոյ... զրուցեցաք»: — Ագաթ., էջ 22 «Ոչ թէ ի հին համբաւուց տեղեկացեալ մատենագրել»: Հմմտ. Ագաթ. էջ 601, եւն եւն:

մ'աւելի լոյս, ինչ որ ունինք մեծ մասով քանի մը մատենագիրներու ակնարկութիւններ են լոկ: Այս նոր գրոյցներէն էր անշուշտ Վարագղատայ վրայ պատմուածը[239] թէ «Ի դժուարս Դարանաղւոյ» հանդիպելով աւազակախմբի մը, որ փախան եւ նրբակամուրջի փայտը գետ ձգեցին որ ազատին, հասաւ եւ «վազեաց զԵփրատաւ վաղս... քան եւ երկուց կանգնոց չափ»: Դժբախտաբար Խորենացի չի յիշեր որոշ թէ գրուցէ առած է այս: — Ինձ նոյնպէս անշուշտ կ'երեւայ թէ «ի հին համբաւուց»[240] կը նկարագրէ Ագաթանգեղոս Տրդատայ քաջութիւնները[241], պարապէ ելլելով խոտի բարդերն եւ անոնց հետ «զհամբարապանսն եւ բազում իշեան» վար նետելն, Գոթաց արքային հետ մենամարտիլն, եւն, մանաւանդ որ նոյն ինքն Ագաթանգեղոս է որ կը վկայէ թէ Տրդատայ քաջութեանց վրայ «առակներ» եւ գրոյցներ կային ժողովրդեան մէջ: Ագաթանգեղեայ եւ Բուզանդայ գրոց մէջ կը գտնենք ուրիշ գրոյցներ ալ, բայց ասոնք քրիստոնէական գրոյցներ են (légende), որոնց վրայ հոս տեղւոյս չէ խօսիլ, այլ յետոյ յընթացս գործոյս կը տեսնենք ասոնց գլխաւորները, մանաւանդ որ, ինչպէս պիտի տեսնենք, ունինք նաեւ այնպէս գրութիւններ, որոնց գլխաւոր հիմն ազգային քրիստոնէական գրոյցներ են:

239 Խոր. Գ. գլ. խ:

240 Ագաթ. էջ 22 եւ 661:

241 Ագաթ. ման. էջ 44—49 եւն:

*Այժմ կը մնայ միայն տեսնել Հայոց առտնին կամ աւելորդապաշտական եւ դիցաբանական գրոյցներուն քանի մը հատը:*

## § 20· ՆԱԽԱՊԱՇԱՐՈՒՄՆԵՐ

*Եզնիկ իր կէս–ինքնագիր գրքին մէջ շատ տեղ ստիպուած ըլլալով իր ժողովրդեան հեթանոսական նախապաշարումներու դէմ գրել՝ կը յիշէ ինչ ինչ աւելորդապաշտական գրոյցներ: Տեսանք արդէն որ նաեւ Արտաւազդայ գրոյցը ծանօթ էր Եզնկայ: Մեր նախնեաց քով կը տեսնենք մեծ համարում մը* կախարդներու *վրայ, որոնք այնպէս իշխանութիւն ունէին որ դեւեր կը յղեն ու կը հանեն*[242]*, եւ նաեւ զմարդիկ կապել մանաւանդ թէ լուսինն անգամ երկիր իջեցնել*[243]*: Հարկաւ ընդարձակ գրոյցներ ալ պիտի չպակսէին այս նիւթերուս վրայ եւ ո՞ գիտէ, այսօրուան հայ ժողովրդեան բերանն եղած անթիւ անհամար ոգիներու գրոյցներու, որչափներն արդէն մեր նախնիքներուն ծանօթ էին: Ջուր տեղ չէ որ*

---

242 *Եզնիկ, էջ* 85 *եւն:*

243 *Եզնիկ, էջ* 217· *«Եւ չէ հնար լուսնի յերկիր իջանել. որպէս կախարդաց տեսեալ ի ժամանակի հրամանաւ Աստուծոյ զլուսնոյն արիւնագոյն լինելոյ զկերպարանսն՝* դիւի նմանել լուսնի բարբանջեն, թէ զլուսին իջուցանիցեն· *որում չէն մարթ լինել, թէ որ քան զբազում աշխարհս մեծ է՝ թէ* ի կալ մի փոքրիկ ամփոփիցի, *եւ* կթիցի անստին»: *Այս խօսքերը կը ցուցնեն երկայն շարք մը լուսնէն կաթ կթելու, եւն, զորոնք չունինք այժմ:*

Եզնիկ կը ջանայ ընդարձակօրէն ցուցնել թէ հրեշտակներ եւ դեւեր եւ մարդկան ոգիներ անմարմին են[244]: Մեր հեթանոս նախնիքները ունէին անշուշտ կարծիք թէ հրեշտակք ու դեւք չէին ոգեղէնք, այլ էին տձեւ եւ անհեթեթ կերպարանքներով մարմնաւոր էակներ, որոնք մարդիկներէն շատ վեր էին զօրութեամբ, եւ այսպէս ճշդիւ այն՝ ինչպէս այսօր իսկ ժողովրդեան մէջ կան այսպիսի փէրիներու լէգէոն մը: Հարկաւ ատով պիտի գտնենք այսօրուան փէրիներուն վրայ եղած զրոյցներուն նման բազմութիւն մը զրոյցներու հին Հայոց քով ալ: Արդէն կը կարծէին Հայերը թէ այս մարմնաւոր ոգիներն եւ հրեշտակները կրնային ամուսնանալ մարդկան հետ[245], որ աղբիւր ըլլալու էր անթիւ զրոյցներու: — Թէ այս դեւերը կը ծնանէին եւ այսպէս կային համբարուք, որոնք կը մեռնէին ալ[246], որոնց կարգէն էին յուշկապարիկ, պայ, պարիկ, ծովացուլ, իշացուլ, նհանգ են: Ահա ժողովրդեան զրոյցներու անթիւ բոյլ մը, բայց դժբախտաբար մանրամասն տեղեկութիւն չունինք թէ այս իւրաքանչիւրին ծննդեան, գործերու, բնակութեան եւ նման հանգամանքներու վրայ ինչ զրոյցներ կը պատէին, որոնց գոյութիւնն անտարակուսելի է եւ արդէն Եզնիկ «ա–

---

244 Եզնիկ, էջ 90—99:

245 Եզն. էջ 91, 12 եւն եւ 100—101:

246 Եզն. էջ 97. «Համբարուաց, ասեն, Ծնունդք գոն եւ մեռանին»:

նուանք զքանզտանաց» եւ աւելի որոշ՝ «առասպելք, եւ պառաւանց դրդչիւնք» կ՚անուանէ[247]: Հայ գիւղացին կը կարծէր թէ կովէ կը ծնանի ծովացուլն[248], եւ արդէն Եզնիկայ կ՚առարկէր թէ տեսած է նոյնն «ի մերում գիւղ[249]» եւ թէ «զգուշին նորա համապատ լսեմք ամենեքեան»: Պայը մարդկանէ կը ծնանէր[250] եւ հայ ռամիկը կը պընդէր թէ «զպայն խիկ իմ աչօք տեսեալ է[251]»: Առլէզն արդէն չան կերպարանօք էր կարծենք, ուստի հարկաւ չնէն պիտի ծնանէր[252]: Դիւցազանց վրայ ալ անթիւ զրոյցներ կը պատէին[253], ինչպէս մինչեւ ցայժմ ըսուածներէն ալ յայտնի է, եւ կ՚երեւայ թէ ըստ Հայոց կարծեաց «սատանայածին» դիւցազունք ալ կային, այսինքն ի կնոջէ եւ ի դիւաց ծնեալ, որուն դէմ կը ստիպուի Եզնիկ կռուիլ[254]: Իսկ վիշապներն ու նհանգները ըստ Հայոց բիւր կերպարանք կրնային առ–

---

247 Հմմտ. Եզն. էջ 98—99 եւն, մանաւանդ 98, 26 եւ 99, 17, 18, 19:

248 Եզն. էջ 99, 7 եւ 98, 22. բայց էջ 99, 21 անշուշտ գրչի սխալմամբ կ՚ըսուի «Մին ասէ՝ թէ ի մերում գիւղ ծովացուլ զկով գործեաց»:

249 Տես ծնթ. 4:

250/251 Եզն. էջ 98, 23 եւ 99, 5, 25, 26: Պայն համար «առ երեսս արարած» է կ՚ըսէին Հայք եւ ծովակաց մէջ կը բնակէր:

252 Եզն., էջ 98, 24 եւ 99, 11 եւ 100, 1—9 Եզնիկ «առլէզ» եւ «արալէզ» երկու ձեւերն ալ կ՚աւանդէ: Արալէզի վրայ հմմտ. վերը § 15. 3:

253 Եզն. էջ 100—102 եւն:

254 Ման. Եզն. էջ 100, 18—24:

նուլ, բայց ինծ մթին է թէ ի՞նչ կը նշանակէ այն խօսքը թէ ատոնցմէ մին «անձնաւոր է եւ միւսն ոչ անձնաւոր[255]»: Այս նհանգաց վրայ ռամկական զրոյց մը կը յիշէ Եզնիկ[256]: Հայք կը կարծէին թէ այս վիշապները «գրաստ»-ներով կու գան գիշերներն եւ կ՚առնուն կը տանին կալէն ցորենները եւ ուրիշ արդիւնք-ները: Բայց թէ կալին տէրն ըսէ «կա՛լ կա՛լ», այն ատեն կ՚ազատէր այն վնասէն, իսկ եթէ «ա՛ռ ա՛ռ» ըսէ՝ կ՚առնուին կը տանէին: Չեմ յիշեր՝ բայց անշուշտ ցայսօր ալ այս զրոյցը պիտի գտնուի գեղջուկներու ոմանց բերանը: Բայց աւելի յառաջ ալ կ՚երթային զրոյցները եւ կը պատմէին թէ այս նհանգները «որս» կ՚ընեն եւ մարդկան պէս «տաճար»ներու մէջ կը բնակին եւ թէ թագաւորներէն դիւցազնե-րէն շատերն որսացած եւ «կապեալ» կը պա-հեն իրենց քով[257]: Այս առթիւ է որ Եզնիկ Արտաւազդայ զրոյցը կը պատմէ եւ որով կ՚իմանանք թէ նման զրոյցներ կային շատ: — «Գետոց նհանգ»ներն եւ «վայրաց շահապետ»-ները նոյնպէս երբեմն «կնոջ կերպարանք» կ՚առնուն, երբեմն ալ «փոկ լինէր եւ լուղոր-

---

[255] Եզն. էջ 102, 14. «Այլ եւ վիշապք, ասեն եւ նհանգք կեղծս ի կեղծս լինին, յորոց մին անձնաւոր է, եւ միւսն ոչ անձնաւոր»: Վիշապը «մարմնաւոր է» կ՚ըսէին Հայք, (էջ 102, 18): Անդ, տող 6 կ՚ըսէ «Եւ ոչ ինչ արարած գոյ՝ որ կարիցէ ի կերպարանս կերպարանս լինել, որպէս զՎիշապաց եւ զնհանգաց համբաւեն»: Հմմտ. նաեւ էջ 106, 1—13:

[256] Եզն. էջ 103, 5—12:

[257] Եզն. էջ 164, 19—24:

դաց ընդ ոտս անկեալ՝ հեղձուցանէր[258]»․ այս չահապետները նաեւ «մերթ մարդ երեւէր եւ մերթ օձ», կալերու մէջ «ջորիք եւ ուղտք» կ՚երեւան[259], դաշտերու մէջ որոգայթներ կը լարուին[260], եւ «հեծեալք իբրեւ զմարդիկ զհետ երէոց» կ՚արշաւեն[261]: Այս ամէնը կարդացողը կը զարմանայ տեսնելով ցայսօր ժողովրդեան մէջ այս ամէնը կան անթիւ գրոյցներով հովեղէններու, ջաղացներու ոգիներուն, կրճերու եւ որոշեալ անցքերու պահապան կեցող դեւերու, որոնք քար կը ձգեն ու կը հալածեն անցուորները, ձի կը հեծնեն եւ կը վազցնեն գիշերը, բացօթեայ տեղեր պարեր կը բռնեն, եւն: Կամայ թէ ակամայ կը յիշէ նաեւ մութ ու լոյս աշխարհներու դէպքերը, արծիւներու եւ վիշապներու բնակարաններն եւ թագաւորները, եւն (հմմտ. ծն. 254): Չեմ յիշեր միայն թէ կա՞յ նոր գրոյցներու մէջ այս «վիշապ»աց մարդու մէջ մտնելու գրոյցը, ինչպէս կը կարծէին Հայք[262]․ չեմ գիտեր նոյնպէս թէ ինչ գրոյց կ՚ակնարկէ Եզնիկ ըսելով[263], «Եւս եթէ բառնայցի ի վեր այնպիսի վիշապն, ոչ եթէ եզամբք ինչ անուանելովք՝ այլ ծածուկ զօրութեամբ իւիք յԱստուծոյ հրամանէ, զի մի շօգին մարդոյ կամ անասնոյ մեղանչիցէ»:

258 Եզն․ էջ 106, 8—11 եւ Եզն․ էջ 106, 14, 15:
259 Եզն․ էջ 106, 23:
260 Եզն․ էջ 106—107:
261 Եզն․ էջ 107, 2:
262 Եզն․ էջ 107, 8—12:
263 Եզն․ էջ 107, 12—17:

Վերջապէս «բասիլիսկոսի» գրոյցն ալ թէ նայելով միայն կը սպաննանէ մարդն ու անասուն եւ անոր համար ջրհորներու մէջ որ բլլայ՝ ձրագով ներս կը մտնեն բռնելու որ ձրագը տեսնելով՝ չմնասէ մարդուն[264], — այս ալ գոնեայ նոր «թուչող օձ»երու, նետօձերու եւն գրոյցները կը յիշեցնէ: «Բաջ»աց վրայ քիչ մ'եւոքը:

Բնագդներու անթիւ առասպելներ եւ պատուներու գրոյցները հարկաւ ծանօթ էին Հայոց: Արդէն աչքի խաղալը նոր մէկը տեսնելու նշան էր[265], եթէ «յերանս... մխ խաղայցէ» ձի հեծնելու նշան էր կամ ազնիւ զգեստ հանգնելու[266], ոտքը «կծելը»՝ ճամբորդութեան կամ անձրեւի, իսկ ձեռք կծելը մէկէն բան մ'առնելու կամ տալու եւն[267]: Փնչելը, «լեզուին կծել»ը, «ունկանն հարկանել եւ ըմբանին կծել» եւ յօրանջելն ու ձգտիլը դեւէն[268] կամ հրեշտակէն[269] կ'ըլլայ նոյնպէս եւ «թալանալ»[270]: Երազներու վրայ ալ հարկաւ կային անթիւ անապաշտական կարծիքներ ու գրոյցներ[271], ինչպէս ցայսօր ալ կան:

264 Եզն. 107, 18 24:
265 Եզն. էջ 175, 23—26:
266 Եզն. էջ 176, 1—6:
267 Եզն. էջ 176, 7—10:
268 Եզն. էջ 176, 11—14, 20, 21:
269 Եզն. էջ 177, 4. «Եւ ոչ փնչեյն ի հրեշտակէ» այլ կամ ի ցրտոյ եւն», ուր քիչ մը յառաջ «իղիւէ» եւ «յայսոյ» բառն էր:
270 Եզն. էջ 179—180:
271 Եզն. էջ 177—180:

## § 21. ԴԻՑԱԲԱՆԱԿԱՆ ԶՐՈՅՑՆԵՐ

*Կը մնայ այժմ տեսնել Հայոց կրօնական կամ ճշդիւ՝* դիցաբանական *զրոյցներու քանի մը հատը: Հարկաւ այստեղ Հայոց դիցաբանութեան վրայ խօսիլ չէ մեր նպատակը, այլ միայն քանի մը դիցաբանական* կարծիքները *դնել համառօտիւ որով գաղափար մը կրնանք կազմել Հայոց կրօնական զրոյցներու վրայ, որոնք դեռ շատ մթին մնացած են եւ շատ քիչ բան քննուած ու լուսաւորուած է*[272]*: Հայոց հեթանոսական կրօնը շատ փոփոխութիւններ կրեց, ընիկ հայ դից հետ կը պաշտուէին նաեւ արեւմտեան յունական դիք, որոնց վրայ անշուշտ եթէ ոչ յունական դէթ նման զրոյցներ ալ կը պատմուէին: Բայց Հայոց կրօնքի դէթ վերջին ժամանակներն՝ էական մաս մըն էր զրադաշտութիւնը: Հայոց գլխաւոր դիքն՝ Արամազդ* (= *Որմիզդ*) *«Վանատուր» «Հիւր-*

---

[272] *Հայոց կրօնից վրայ սակաւ գրութիւնք կան: Գաղղիերէն գրեց Շահան Ջրպետեան որ հայերէն թարգմանուեցաւ* Մեղու Հայաստանի *լրագրին մէջ յամի* 1860*: Ինճիճեանին* (*Հնախօսութիւն Հայաստանեայց, Հատոր Գ. Վենետ.* 1835, *էջ* 148—237) *շատ դոյզն գործ մըն է: Մ. Էմին* 1864 *հրատարակեց ռուսերէն գրութիւն մը Հայոց կրօնից վրայ, որ բաւ քննադատի մը նոր շատ քիչ բան կը բովանդակէ: Գովելի գործ մըն է Կոստանեանցի «Հայոց հեթանոսական կրօնը, Վաղարշապատ,* 1879*: Հմմտ. Ա. Մ. Գարագաշեան, Քննական պատմութիւն Հայոց, Կ. Պ.* 1880, *էջ* 269—276*: Մ. Մխանարեանց, Քնար Հայկ. Երգր, էջ* 24—34*. եւն եւն:*

ընկալ»[273] եւ «արի» անուններ ունի, որ էր «հայր դիցն ամենայնի» (Ագաթ. էջ 590) եւ ինքն էր արարիչ երկնի եւ երկրի եւ որուն գօտին էր ծիածանը Թովմա Արծրունի, տպ. Բ. Պ. Պետրբ. 1887. Ա. դլ. ա. էջ 19, որ «որդւոց տարրապաշտից» կուտայ այս կարծիքը: որոնք կը ցուցնեն գրոյցներու երկայն շղթայ մը, որ դեռ քիչ ծանօթ է մեզ: Հետաքրքրական էր գիտնալ թէ ի՛նչ գաղափար ու գրոյց ունէին Հայք աշխարհի ստեղծման: Անշուշտ երբ նոր զրադաշտութիւնը կը տիրէր Հայոց, Հայերն ալ նոյն կարծիքն ունէին, ինչ որ սասանեան Պարսիկները, որոնք կ'ընդունէին թէ ամէնէն յառաջ կար Աստուածութիւն մը «Անսահման ժամանակ կամ Միջոց»[274]», զոր Զրուան կ'անուանէին[275], այս Զրուանը հազար տարի զոհ ըրած է որ որդի մը ծնանի (Որմիզդ), բայց իւր երկմտութեան պատճառաւ ծնաւ երկուորեակ՝ Որմիզդ եւ Արհմն: Բայց նախ քան ծնանիլը՝ խոստացաւ որ անոնցմէ ո՛վ որ նախ ծնանի՝ անո՛ր պիտի տայ թագաւորութիւնը: Որմիզդ այս խորհուրդը յայտնեց Արհմնի, որ ծակեց Զրուանայ որովայնը եւ ելաւ եւ յետոյ Որմիզդ: Զրուանը խոստումը պահելու համար՝ տուաւ թագաւորութիւնը ինն հազար տարի, որմէ ետքը Որմիզդ՝ որ Արհմնի վրայ թագաւոր է՝ պիտի տիրէ միայն: Ասոնք

---

273 Ագաթ. էջ 623:

274 Հմմտ. Միանսար, էջ 26:

275 Եզն. էջ 113:

*ստեղծեցին աշխարհը․ Որմիզդ՝ բարին ու Արհմն՝ չարը[276] ու դեւերը[277]։ Այս երկարմատեան գրութեան ուրիշ մաս մ՚ալ կայ․ Արհմն տեսնելով որ Որմիզդ գեղեցիկ արարածներ ստեղծեց, Արհմն ցուցնելու համար որ բարի ալ կրնայ ստեղծել՝ սիրամարգն ըստեղծեց[278], ինքը ստեղծեց լյսը, որմէ զուրկ էին Որմզդի ստեղծածները[279] արեւու եւ լուսնի եւ աստեղաց ստեղծման վրայ ալ այլանդակ հեթանոսական կարծիքներ կային[280], որոնց մէջ գործ ունի նաեւ Մահմեայ դեւը, որուն տարին երեք անգամ գոհ կը մատուցուէր[281]։ Արհմն «խարամանի» կ՚անուանուէր, «առ ի յարեւէ զարեւատենչիկսն արկանելոյ[282]», ահա գրոյց մը, որ ինձ մթին է։ Այս ամենայն կը հաստատէ նաեւ Եղիշէ[283]։ Սակայն դիտենք որ գրադաշտութիւնն այնպէս՝ ինչպէս հինգերորդ դարու մէջ մեր առջեւ կը դնեն այս մատենագիրները, շատ տարբեր էր հին գրադաշտութենէն[284]։ Այս գրադաշտութիւնն այնպէս տիրած էր Հայոց, որ հին լեզուին մէջ շատ*

---

[276] *Եզն․ էջ* 113—115։

[277] *Հմմտ․ Եզն․ էջ* 138, 6։

[278] *Եզն․ էջ* 139, 13—18։

[279] *Եզն․ էջ* 138, 15 *չ․ եւ* 139, 26։

[280] *Եզն․ էջ* 138, 22—139, 4․ *եւ Եզն․ էջ* 140, 16—144։

[281] *Եզն․ էջ* 140, 5, 6։

[282] *Եզն․ էջ* 114, 16—20։

[283] *Եղիշէ, էջ* 20—21։

[284] *Հմմտ․ Կոստանեանց, էջ* 4—5։

*հետքեր թողուցած է, ինչպէս են* հրեշտակ, դժոխք, դեւ, յաշտ, *եւն, այլեւ նոր լեզուին մէջ կան շատ մ'ասութիւններ այսպէս* լուսահոգի, *աչքըդ* լոյս, արեւ *վկայ եւն) որոնք նոյնպէս այս կրօնքին ազդեցութեան արդիւնք, ցուցնելու կը ջանայ*[285], *ինչպէս նաեւ* մութ ու լոյս *աշխարհի գաղափարն*, եօթը գլխանի դեւեր, «ջադու» պառաւներ, *սեւ պառաւների գիշերուայ մայրը*, սեւ կապես, սեւ անյատակն երթաս *եւ այլ ասութիւններ ալ Արհմնի յիշատակին եւ զրոյցներուն մնացորդ կ'ուզուի համարել: Կան այնպիսի* ոգիներու *անուններ* (*ինչպէս* հօրօր ու մօրօր, հացի հրեշտակ, քնի հրեշտակ *եւն*) *որոնք «նոյն հեթանոսութեան հետքեր» կը տրուին*. մազէ–կամուրջի *զրոյցն ալ «զենդ–աւեստայի* չինուանտ *ասուած դատաստանի կամուրջը» կը յիշեցնէ, ինչպէս կ'ուզուի*:

*Արամազդայ որդին էր Միհր, որուն վրայ ճշդիւ չենք գիտեր ինչ կարծիք ու զրոյց ունէին Հայերը, զոր Հայոց «հաւատարմութեան ոգի» կը համարին ոմանք*[286]: *Միհր էր անշուշտ ինչպէս Պարսից նոյնպէս եւ Հայոց էր դիք երդմանց եւ ուխտապահութեան: Միհր է մեր ժողովրդեան մէջ Հեփեստոսի նման գաղափարներ ալ տածած պիտի ըլլայ, վասն զի յունական դիցաբանական Հեփես–*

285 *Կոստանեանց*, *էջ* 5—14:

286 *Անդ*. *էջ* 26—27:

տօնը մեր նախնիք Միհր կը թարգմանեն[287] : Միհրի պաշտամունքէն կը համարին ոմանք տէրՑոռազի այսօր մնացած սովորութիւնը[288] : Միհրի անունը շատ կը տեսնուի հայ անուններու վրայ, Միհրդատ Միհրան, Միհրշապուհ են : Իւր մեհեանն ալ «միհրան մեհեան» կ'անուանուէր[289], իսկ փայտակարանի մէջ գտնուածն «Եօթնփորակեան» դուցէ անոր համար որ, ինչպէս կ'ըսուի, եօթնդռնեան էր յանուն եօթն մոլորակաց[290], իսկ ըստ այլոց վասն զի մէկ քարի մէջ փորուած էր[291] : Գուցէ անծանօթ գրոց մը յիշեցնէ այս անունը : Աւելորդ է յիշել որ Հայերն ալ ունէին հարկաւ կրակապաշտութիւնն ու ջրապաշտութիւնն ըստ Սասանեանց, «որմզդական», կամ անշէջ հուրը[292], ատրուշաններ են : Այս պատճառաւ կրակը «քոյր» եւ ջուրը «եղբայր» կ'անուանուի[293], անշուշտ գրոցներու հետքեր են : Ջրապաշտութեան քանի մը սովորութիւնները (պատրուճակները «անյաղ» չզենուլ, հայս չեփել առանց «փանդամի», «ծխուղք եւ քակորք» կրակի մէջ չե-

287 Այսպէս Ագաթանգեղեայ յոյն թարգմանիչը Մ«րհական մեհեանը» (593, 21) «ի մեհենի Եփեստեայ» ըրած է :

288 Հմմտ. Միխնասրեաց, էջ 29 :

289 Ագաթ. էջ 593 :

290 Ինճիճեան, Հնախօս. Գ. էջ 159 :

291 Միխնասրեաց, էջ 28, որ նաեւ «մեհեան» բառը Միհրէն յառաջ բերել կ'ուզէ :

292 Խոր. Բ. 9է եւ այլուր :

293 Խոր. ճառ ի Հռիփսիմեանս, տպ. Վենետ. 1843, էջ 301. տես նաեւ քիչ մ'ետքը :

փուլին, «ձեռք առանց գոմիզոյ մի լուասցին», եւն) կը յիշէ Եղիշէ[294]: Լուսին եւ արեւ ալ կը պաշտուին եւ արդէն կ'երդնուն Հայք» «յարեգակն[295]»: Քրիստոնէութիւնը չկրցաւ բոլորովին արմատախիլ ընել արեւու պաշտօնը եւ միշտ կը գտնուէին սակաւաթիւ արեւապաշտներ («արեւորդիք»), եւ այսօր ալ արեւապաշտ են Եզիտիներ: Կը պաշտուէր Աստղիկ, որ Յունաց Ափրոդիտէսի համեմատ կը դրուի[296], այլ նախնաբար լուսինն էր[297] եւ գեղեցկութեան դիցուհի[298]: Աստղկան նուիրեալ էր մրտին եւ վարդ. եւ Հայերը մեծ շքեղութեամբ կը տօնէին (Վարդավառ): Աստղ մնացորդն է Վարդավառի տօնը, որ փոխուեցաւ ի տօն Այլակերպութեան եւ այլեւայլ սովորութիւններ որ այսօր կան, գ. օ. աղաւնի թռցնել, ջուր ցանել իրարու վրայ են[299]: Աստղկան հետ կը պաշտուէր Նանէ[300], որ հնարագիտութեան դիցուհի կը

---

294 Եղիշէ, էջ 40: «Օձք, մողէզք, գորտք եւ մրջմունք եւ որ այլ եւս խառնափնդոր բազմաճճիք են մի՛ կայցեն, այլ վաղ թուով համարով ի մէջ բերցեն ըստ արքունի չափոյն: Ըստ Թովմայի Արծրունւոյ (հրտ. Ք. Կ. Պ. 1887, էջ 27) վասն զի Որմիզդ զուարակ մը գողցաւ եւ յաղեաց եւ պահեց որ յետոյ ուտէն, բայց երբ իրիկուն եկաւ՝ մողէզք կերած էին:

295 Խոր. Բ. գլ. Ժթ. եւ իդ. եւ այլուր:

296 Ագաթ. էջ 607:

297 Ինճիճեան, Հնախ. Գ. էջ 166 չ.:

298 Կ. Կոստանեանց, էջ 20—23:

299 Հմմտ. Ինճիճեան, Գ. էջ 171. Միխանսարեանց, էջ 31:

300 Ագաթ. էջ 591 «Թիլ աւանի մէջ էր «Նանէական մեհեանը դստերն Արամազդայ»:

համարուի, այլ ըստ այլոց նոյն է ընդ Աստղկան[301]: Այսօր ալ ռամիկներու մէջ տանտիկինը նանէ կամ նանի կը կոչուի[302]: Հայոց բուն դից մէջ նշանաւոր էր Անահիտ, որ «մեծ, տիկին, փառք ազգիս եւ կեցուցիչ[303]» անուններ կը կրէր եւ շատ մեհեաններ ունէր, բայց գլխաւորն ի Տարօն յԱշտիշատ՝ որուն մէջն էր համակ ոսկիէ արձանը «Ոսկեմօր ոսկեծին դից», ուստի եւ Բագինը կ'անուանէր «Ոսկեհատ Ոսկեմօր դից[304]»: Տրդատ պարծելով կ'ըսէր[305] «Թագաւորք պատուեն (զԱնահիտ), մանաւանդ Թագաւորն Յունաց» եւ յոյն եւ լատին մատենագիրները յաճախ կը յիշեն զայն[306]: Անահիտ Հայոց համար էր «մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան, ծնունդ մեծին Արամազդայ»: Բայց յետոյ երբ Յունաց Արտեմիսն Հայաստան բերուեցաւ[307], Անահիտ կ'անուանէր: Անահտայ կը նուիրէին Հայերն իրենց աղջիկներն, ըստ Ստրա–

---

301 Հմմտ. Կոստանդեան, էջ 25—26:

302 P. Lagarde, Armenische Studien, Göttingen, 1877, էջ 110, թիւ 1592, սանսկրտերէն նանա (մայր) բառին հետ լծորդ կը դնէ:

303 Ագաթ. էջ 51—52, էջ 61, 1 «Մեծն Անահիտ, որովկեայ եւ զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց»:

304 Ագաթ. էջ 584 եւ 590 եւ 607:

305 Ագաթ. էջ 52: Տրդատ հրամայեց Գրիգորի «Թաւ ոստս ծառոց՝ նուէրս» տանել Անահտայ:

306 Հմմտ. Ստրաբոն, ԺԱ. Պլինիոս, Ե. 24. ԼԳ. 4 եւ այլք: Հմմտ. Ինճիճեան, Հնախօսութիւն Գ, էջ 175—179:

307 Խոր. Բ. գլ. ժբ եւ ժդ:

բոնի[308]: Աստղկան ամուսինն էր Վահագն, որ քաջութեան պատկեր էր Հայոց համար. իւր վերնադիրն էր Վիշապաքաղ[309], որ ազատեց Հայ ազգն վիշապներէ, եւ իւր ուրիշ մէկ տիտղոսն էր «քաջն»[310]: Իւր տաճարն Փարքեայ լերան սնարքը Աշտիշատի մէջ եւ կ'անուանուէր «մեհեան վահէվահեան», որուն քուրմ էին Ոսկեմօր դից եւ Աստղկան բագինները, որ «Սենեակ Վահագնի» կը կոչուէր[311]: Իւր վրայ եղած զրոյցները տեսանք վերը: Հոս կը գտնուէր նաեւ Երազամոյնի՝ «երազացոյց երազական պաշտաման» Տիւր դից մեհեանը, որ «դպրի» գիտութեան դիք էր եւ «Որմզդի գրչի դիւան» կը կոչուէր[312]: Թորգան էր Բարշամինա «սպիտակափառ դից» մեհեանը[313]: Բայց Հայոց դիցաբանութեան մէջ մուտք գտաւ յետոյ յունական դիցաբանութիւնը, որուն վրայ խօսիլ չէ տեղւոյս. անշուշտ էր սեմական կրօնքէն ալ շատ բան անցաւ Հայոց: Կարծիք կայ թէ արեւելեան Հայաստանի մէջ աւելի տիրող էր զրադաշտականը, իսկ արեւմտեան մասին մէջ կռապաշտականը, որուն նշան է որ երեւելի պաշտօնատեղիքները Հայոց (Երիզա, Աշտիշատ եւն) աւելի արեւմտեան մասին մէջ են. իսկ

308 Մտրար. ԺԱ. 16:

309 Ագաթ. էջ 606. Ցետոյ նաեւ Հերակղեայ Վահագն անուն կը տրուէր (Բուզանդ. Գ. գլ. ժդ):

310 Ագաթ. էջ 106:

311 Ագաթ. էջ 606—607:

312 Ագաթ. էջ 584:

*արեւելեանին մէջ նշանաւոր պաշտօնատեղի չի յիշուիր* [313] :

*Հայոց դից մէջ աննշանակ չէր* Սպանդարամետ, *որ ըստ ոմանց «ստուտածու–հեաց թագուհին» էր եւ «երկրիս ծննդական–նութեան գաղափարն անտեսանելի եւ նորա տեսանելի կերպով պատկերն» էր «եր–կիրս, գետինը* [314]»: *Բայց չէ այսպէս, վասն զի սոյգ է որ այս անուամբ դիք մ'ունէին Հայք եւ յունական* Բաքոս *ի տեղ թարգմա–նութեան մէջ* Սպանդարապետ *կը գնեն* [315], *ուստի* արական *դիք ըլլալու էր, որով չգի–տեմ ինչպէս կարելի է որ «ստուտածուհեաց թագուհի ըլլայ»: Թերեւս վերջինն էր կամ գէթ «երկրիս ծննդականութեան դիցուհի» էր* Սանդարամետ, *զոր Կ. Կոստանեանց նոյն կը համարի Սպանդարամետի հետ* [316], *կարծեմ ոչ իրաւամբ: Սանդարամետ կամ սանդարա–մետք արդեամբ կը նշանակէ* խորք երկրի, դժոխք [317], *մանաւանդ թէ ճշգիւ լատինական*

---

[313] *Ագաթ.* 589: — *Ա. Մ. Գարագաշեան, Քնն. Հյց. Պատմ. էջ* 278. 13:

[314] *Կ. Կոստանեանց, էջ* 27—28:

[315] *Բ. Մակաբ. Զ.* 7: *Իբրեւ տօն հասանէր* սպանդարամետական պաշտամանն *տաղնապէին զնոսա պատկերս թաւ սատօք* (Սպանդարամետ = *յն. τῷ Διο–νύσῳ*):

[316] *Կոստան. էջ* 30:

[317] *Հմմտ. Եզեկ. լա.* 16: Կոչ. Ընծ. *Զ. «ան–դունդք սանդարամետի»:* Բարսեղ, *վեցօր. Ա. «ի ներ–քոյ սանդարամետաց երկրի»:* — Զգօն, *ԺԲ. «Ջուրք վերինք եւ ջուրք ստորին* սադարամետականք» *են:*

Ceres եւ Յունաց Դեմետրէ դիցուհւոյն տեղ Սանդարամետ թարգմանուած կը գտնենք[318]: Կը յիշուի վերջապէս «նորոց պտղոց տօնից» դիք Ամանորայ «Ամենաբեր[319]», որուն գլխաւոր տօնն էր Նաւասարդի մէկին: Բայց նոյնիսկ այն որ հոս կը կոչուի «հիւրընկալ դիցն վանատրի» կը ցուցնէ որ Արամազդայ համար էր այս տօնը, եւ որուն վերադիրն է, ինչպէս տեսանք, Վանատուր եւ հիւրընկալ անունը: Նաեւ Ս. Գրոց թարգմանութեան մէջ[320] կը գտնենք թարգմանուած ոլիմպական դիցն (յն. «Դիոսի»)... Հիւրասէր ոլիմպական դիցն վանատրի (յն. «Դիոսի Օտարասիրի[321]»):

Յիշեցինք Տիւր դիքը, որ Արամազդայ «դպիր»ն էր եւ երազացոյց: Այս դից յիշատակն է անշուշտ այսօր ժողովրդեան բերան գտնուող «գրող»ի գրոյցն: Այսինքն այս «Գրող»ի պաշտօնն էր մարդկանց վրայ հսկել եւ անոնց գործերը «գրել» եւ ինքն էր որ երազներու մեկնութիւն տալով ապագայի գուշակութիւն կ'ընէր: Այսօր իսկ շատ կը լսուի այս անէծքը թէ «Գրողը տանի զքեզ»,

---

318 Կոչ. Ընծ. տպ. Վիեննա, 1832. Զ. էջ 97. «Ձգօրեանն Աստուած հաստատեալ... ուստի՞ իցէ զի սանդարամետին երկիր պաղանեն». (յն. Δήμητρα προσκυνήθη: — Խոր. Գ. գլ. կր. «Սանդարամետապետ»:

319 Ագաթ. էջ 623:

320 Բ. Մակ. Զ. 2:

321 Հմմտ. Եւսեբ. Քրոնիկոն, Բ. 240. — Ինճիճեան, Հնախ. Գ. էջ 180:

«Գրողից սեւ խաբարդ լսեմ»: Թերեւս նաեւ «Այս էր ճակտիս գիրը». «ճակտիս այսպէս էր գրուած» ռամկին սուսթիւնները ոչ ուղղակի իսլամական ազդեցութիւն ըլլան, այլ Գրողի յիշատակներն ըլլան[322], զէթ գիտենք որ Հայերը բախտի, ճակատագրի եւ «Հրամանաց կը հաւատային, այնպէս որ մարդուն ամէն գործը «ընդ հրամանաւ» (այսինքն ի դիցն ճակատագրէ որոշեալ այնպէս որ պէտք է որ ընէ) կը համարէին[323]: Հարկաւ կար նաեւ քաղդէութիւն եւ աստեղանշմարութիւն, որոնք ծննդոց եւ մահուան պատճառներն «յաստեղաց իբրեւ ի կենդանեաց» կը համարէին[324], որոնք էին նոյնպէս պատճառ բախտաւորութեանց եւ չուառութեանց: Այսպէս առիւծ աստեղատան տակ ծնողը թագաւոր կ'ըլլայ, եզ աստեղատան՝ զօրաւոր, խոյին՝ հարուստ, կարիճին՝ չար եւ անօրէն[325]: Երբ «Կրոնոսը աստեղատուն մտնէր՝ թագաւորը պիտի մեռնէր[326] եւ նմանները.

Այսօր խսկ ժողովրդեան մէջ կան լերան գետին ու լճին այլեւայլ կէս դիցաբանական զրոյցներ (դ. օ. Մհերի դուռը, Առչակի հալոնի թուրը եւն): Հին ատեն հարկաւ բազմաթիւ պիտի ըլլային այսպիսիները, բայց

322 Հմմտ. Մ. Մխանսարեանց, էջ 27:

323 Մանդակունի, ճառ «վասն Հմայից» էջ 205—206 եւն: Հմմտ. Եզնիկ, էջ 153 եւն:

324 Եզնիկ, էջ 154 եւ Մանդակունի յաճախ ի նմին ճառի:

325 Եզնիկ. 155—56, 159:

326 Եզնիկ 156, 10:

մենք շատ քիչ բան գիտենք: Տեսանք որ ոգիներու եւ դեւերու վրայ ինչ հաւատք ունէր հայ ժողովուրդը: Կային տեղեր ալ նուիրեալ էին այս կամ այն ոգիներու, այսպէս դ. օ. Ազատն Մասիս բնակարան էր Քաջաց անմերձենալի եւ իրենք էին որ Արտաւազդը պիտի բռնէին եւ չղթայակապ կապէին: Ճշդիւ չենք գիտեր ինչ տեսակ գաղափար ունէին Հայերն այս քաջաց վրայ, բայց քաջ անուան միտ դնելով կ'երեւայ թէ զօրաւոր եւ հսկայ ոգիներ պիտի ըլլան: Թերեւս այս քաջերուն հետ կապ ունենայ քաջահաւ անունը թռչնոյ մը, ինչպէս կը թարգմանեն նախնիք օտար ազգաց ibis բառը[327]: Այս քաջերը միանգամայն մարդկան մէջ ալ կը մտնէին եւ այսահար կ'ընէին, այնպէս որ «քաջակալ» էր այսահարի տեսակ մը եւ վերջապէս «կերպս կերպս» կ'երեւային: (Կանոնք)[328]: — Քաջաց բնակարանը Մասիս ազատ կը կոչուէր, վասն զի ըստ ոմանց ազատաց կամ քաջազանց բնակարան էր[329] կամ եւ ըստ այլոց այդ անունը կը նշանակէ թէ անյայտ եւ մարդկան անհաս, անմերձենալի եւ սրբազան իբրեւ բնակարան դից[330], այնպէս ինչպէս այժմ «մութ աշխարհ» կ'անուանէ զայն ռամիկը[331], ըստ երրորդ կար—

327 Հմմտ. դ. օ. Ղեւտ. ԺԱ. 17:

328 Հմմտ. քաջ բառին նշանակութեան համար նաեւ Մ. Էմին, Վէպք, էջ 44—45:

329 Ինճիճեան, Հնախօս. Ա. էջ 61:

330 Մ. Էմին, էջ 45—49:

331 Մ. Էմին, Վէպք, էջ 44:

ծեաց[332], վասն զի Մասիս կը նկատուէր «մայր ազատեալ յերկունց ծննդեան իւրոյ»: Վերջապէս չորրորդ կարծիքն է թէ Արամազդայ աթոռակից ոգիներն պարսկերէն ազատա կը կոչուին, որ կը նշանակէ պաշտելի, ուստի ազատ Մասիս ըլլայ = պաշտելի Մասիս:

Երկրորդ տեղական գրոյցը ծանօթ է մեզի Արմաւիրի սօսեաց գրոյցը, որ էր հմայատեղի Հայոց եւ Խորենացի կ'ըսէ թէ Անուշաւանայ որդին Սօս կը կոչուէր վասն զի նուիրեալ էր «ի սօսիս» Արմաւրի, եւ թէ Հայերն այս սօսեաց տերեւներու սօսաւիւնէն, օդոյ մեղմ կամ սաստիկ շնչելէն այլեւայլ հմայութիւններ եւ գուշակութիւններ կ'ընէին[333]: Օդի շարժումը ոգիներու կ'ընծայէին նախնիք եւ Եզնիկ ալ յիշելով թէ «ոգւոյ եւ հողմոյ» անուններն յունարէն եւ ասորերէն լեզուաց մէջ նոյն են, կը յաւելու թէ նաեւ հայերէն այսպէս է եւ նախնեացմէ այսպէս ուսած ենք[334]: Ասկից է

332 Կ. Կոստանեանց, էջ 17:

333 Խոր. Ա. գլ. ի, էջ 44:

334 Եզն. էջ 90. «Ոգւոյ եւ հողմոյ անուն եբրայեցերէն եւ յունարէն եւ ասորերէն նոյն է. նա թէ եւ հայերէն մանր ոք միտ դնիցէ նոյնպէս գտանի. յորժամ տագնապեալ ոք յումեքէ՝ ասէ, չետ ոգի կլանել, չետ ոգի առնուլ, եւ այնու զօդոյս՝ զոր միշտ ծծեմք՝ յայտ առնէ»: Ցետոյ կը յաւելու թէ մենք չար ոգւոյն այս կ'ըսենք «որպէս ի խորանաց հարցն մերոց առաջնոց բատ սովորութեան ի մեզ կարգելոյ», այլ գիտեմք թէ այսն հողմ է, եւ հողմն՝ ոգի... յորժամ մեք ասեմք՝ թէ սիք շնչէ, ասորնեայք ասեն՝ այս շնչէ»:

ըստ ոմանց սօսաւիւն բառը[335]: Այս սօսեաց տեսակը Թերեւս Հայաստանի յատուկ էր եւ Թերեւս անոր համար նուիրական[336]:

Ուրիշ տեղական գրոյց մըն ալ է Բուքի գրոյցը, զոր Խորենացի կը պատմէ[337]: Կանդուարայ լեռներէն հոսած Արդաւանքար անցնելով Հռիփսիմեանք, կ'ըսէ, եկան Պաղատոյ լերան գլուխն ուր «Արամազդայ եւ Աստղկայ տունը» կար եւ «յաճախ պաշտամամբ տօն կարգային, որ է Պաղատ», եւ անկէ քիչ մը յառաջ երթալով գտան «տուն կրակի, անյայ հրոյ, անդադար այրման աստուածոյն», ուր լերան ստորոտը խորավէմ մը կար եւ որմէ ակնաղբիւր կ'ելլէր, տեղին կոչի Բութ, ուր կը պաշտէին «վառէին» զկրակն քոյրն եւ զաղբիւրն եղբայրն»: Այս քարին անձաւին մէջ երկու վիշապք կային «դիւացեալք եւ սեւացեալք», որոնց կը զենուին «աղջիկ կոյս եւ պատանիս անմեղս»: Դեւերը զուարճանալով, կ'ըսէ, այս զոհիւք «ահագին խաղ տեսիլ եւ փայլումն եւ Թնդմունս եւ կայԹմունս գործէին», խորաձորն ալ Թունաւոր օձերով եւ կարիճներով լի էր[338]: Այս

335 Գարագաշեան, Քնն. Պատմ. Հայ. էջ 274:

336 Անդ, Խորենացի «ի սօսին Արամանեկայ» կ'ըսէ, իսկ Գարագաշեան այս «Արամանեկայ» սխալ թարգմանութիւն կը համարի Հռոմայեցւոց platanum armeniacumը, որով լատինական աղբիւրէ առած պիտի ըլլայ Խորենացի այս գրոյցը (Հմմտ. Գարագաշեան նաեւ 182): Բայց Խորենացի լատիներէն չէր գիտեր:

337 Խոր. Պատմ. Հռիփս. էջ 301:

338 Խոր. անդ, էջ 301—302, 3:

*Զրոյցը կը յիշեցնէ մեզ կենդանի զրոյցներն, որոնց մէջ* վիշապները *աղբերական առջեւ նստած ջուրը կ'արգելուն եւ որոնց աղջիկներ կը տրուին ի կերակուր եւն: Քրիստոնէական զրոյց մըն ալ կը յաւելուր թէ երբ աղօթիւք սրբոց դեւք հալածեցան, մարմնաւոր օձերն ալ «քարացեալ կան մինչեւ ցայսօր*[339]*»: Խորենացի այս տեղը կը յիշէ նաեւ առ Սահակ Արծրունի գրած թղթին մէջ*[340] *եւ* Դարբնաց-քար *կ'անուանէ, եւ կը յաւելու թէ դեւք հոն բնակելով կուտային «դեղս ախտականս» եւ «*կռանմայն դարբնաց ահաւոր հրաշիւք արհաւիրս գործէին»... *եւ մարդիկ կ'առնուին այս տեղէն «ի չաստուածոցն ծրարս թարախածորս ի պատիր ախտիցն»: Իսկ սուրբ առաքեալը Բարթուղիմէոս հալածեց «զդարբինսն զգործօնեայս չարին» եւ փշրեց կուռքը որ Անահտայ էր: Այսչափն արդէն բաւական գաղափար տուաւ թէ ինչ ըմբռնում եւ զրոյցներ կային Հայոց մէջ* ոգիներու *եւ* դեւերու *վրայ եւ տեսանք որ* հմայութիւնը *շատ հին էր նաեւ Հայոց մէջ եւ գլխաւորաբար* սօսեաց *հմայութիւնը:*

*Հմայութեան եւ գիւթութեան վրայ շատ աւելի լոյս կը սփռէ Մանդակունւոյ տրուած մէկ ճառը*[341]*: Տեսանք որ* կախարդներուն

---

[339] *Անդ.,* էջ 303, 10:

[340] *Խոր. Թղթ. առ Սահակ,* էջ 294—295:

[341] *Մանդակունի, ճառ ԻԶ. «Թուղթ վասն հմայից գիւթականաց եւ անօրէն յուռթողաց»* (էջ 190—206):

ինչ մեծ զօրութիւն կը տրուէր, լուսին անգամ կ՚իջեցնէին եւն[342] իսկ Մանդակունի դիւթութեանց եւ հմայութեանց շատ նոր տեսակները կը յիշէ[343]. յորժամ ի խտիրս եւ ի հմայս երեւի կիւսս, ի դիւթութիւնս եւ ի թովչութիւնս, ի հատահարցութիւնս եւ ի հաւահմայութիւնս եւ ի մաղարախութիւնս եւ ի քուահարցութիւնս եւ ի հեղահարութիւնս եւ ի հմայութիւնս եւ ի միջադխտութիւնս եւ ի գրարարութիւնս, յաստեղագխտութիւնս, ի դիւահարցութիւնս, յօրահմայս, ի լուսնախտիրս, եւ ի եւ ի չեղջախտիրս, յողոտնահմայս, դեղահմայս, ի սննիկոնս, յուռութս, ի բախտս, ի ճակատագիրս, եւ ի գիր պահարանի, եւ յամենայն ի շարժմակս բժժանաց, հմայից, դիւթայց» եւն: Այս կտորն թէ ունի մթին մասեր, բայց շատ պարզ եղանակաւ մեր առջեւ կը դնէ Հայոց դիւթութեանց եւ հմայութեանց անուններն եւ տեսակները միառմի:

Հայոց կարծիքն էր թէ յուռթիւք եւ հմայութեամբ կարելի է բժշկուիլ, ինչպէս նաեւ գիր պահարան (թըլըսըմ) ունենալով, ուստի կը սկսէին «յուռութս յուռթել, եւ զատտանայական բարբանջս բարբանջել, կամ աղ եւ ածուղ, կամ աղաճի առնուլ կարմիր, եւ երկաթ, եւ ջուր եւ ոլոռնս ուռթել, եւ կամ գիր պահարան ընդ անձն արկանել, եւ կամ փոկերս ձկանց եւ սողնոց, գծրարս

342 Տես վերը §

343 Մաղ. էջ 193, 35—194, 5:

բժժանաց ի ձեռին եւ յակլին եւ ի պարանոցի կապել[344]»: Նաեւ իրենք դիւթութիւն կ'ընէին անձանց հմայութիւն սորվելով[345]: Իսկ դիւթութեան եղանակն աւելի կը բացատրէ ըսելով[346] թէ «ի մէջ գետինն անցեալ յուռթելն, եւ ընդ ուռթելն մերձենան ի նա դեւքն, եւ ընդ մտանելն յարանչտի, ի ձախ դիւթէ ի յաջ թքթքէ»: Զարմանք այն է որ քրիստոնեայք իսկ կ'ընէին այս դիւթութիւններն եւ «Քրիստոսի անուամբ ուռթիւ մանաւանդ թէ նաեւ «արեղայք» եւ «սպասաւորք» ոմանք «Եկեղեցւոյ» կը գրէին զգիրն[347], այսինքն հմայական դիւաց երդմընեցման եւ դիւթական գրութեանց եւ պահպանակաց գիրը, զոր Մանդակունի գիր, գիր պահարան, Երդմունք պահարանաց եւ պահարանք կ'անուանէ, եւ այն՝ սրբոց եւ Աստուծոյ իսկ անունը կը գրէին յայնմ[348], եւ ասոնց համար է որ «մոլորելոց առաջնորդ եւ ինքեանք մոլորեալք» կը կոչէ սուրբը[349]: Դեւ կոչելն ալ սովորական էր հմայից որ կը

344 Մանդակ. էջ 191, 13—18:

345 Մանդակ. 193, 11—16. «Մխս ի մարմին խղեացին եւ կամ ցաւ ինչ արտդ անկանի, դիւթս ի տուն ածեն առ ի յուռթել. եւ ոչ մի արտաքին դիւթիւքն վարին, այլ եւ անձանց եւս ուռութս ուսանին, եւ դրել պահարանս, եւ ի փողս ցաւածիյն արկանեն, եւ ժաժմակս մտացածին բանից»:

346 Մանդակ. էջ 191, 121—24:

347 Մանդակ. էջ 192, 11—193, 10:

348 Մանդակ. էջ 193, 18—21:

349 Անդ, էջ 193, 4—10:

«կոչէն զդեւս յաղ, յերկաթ ի ջուր, ի նարօտս, յիւղս, ի պարի, եւ յուլունս, ի մոմ եւ ի հեր գլխոյ[350]: Այս դիւթութեանց մէկ արարողութիւնն ալ էր «կանայս ձեռնածուս ի տունս մուծանել[351]»: — Դիւթութեան արդիւնքն անսխալ կը կատարուէր ըստ Հայոց կարծեաց, որուն դէմ ողորելով Մանդակունի կ՚ըսէր եթէ երբեք պատահէ՝ մի խաբիր··· ոչ եթէ ի դիւթէն եղեւ, այս եւ թէ չերթայիր առ դիւթն՝ քեզ ի ժամուն այս այնպէս պատահէր[352]: —

Օրահմայք ալ կային ի Հայս, այնպէս որ այս կամ այն օրն ինչ որ մէկուն ձեռքն անցնէր նաեւ խոտ, հնձան, կալ եւ ամէն բան կ՚եղծանէր[353]: Այս չար օրերն էին շաբաթ եւ չորեքշաբթի[354], որոնք «օր խոտրանաց[355]» էին: Լուսնի դիւթութիւն ալ կը յիշուի, այսինքն Հայք վախնալով որ լուսինը վնասէ խոտերու հունձքի, դիւթութեամբք կը ջանային արգելուլ անոր զօրութիւնը[356]:

Այսչափով կարծենք բաւական գաղափար կրցանք կազմել Հայոց նախապաշարումներու աւելորդապաշտական եւ դիցաբանական զրոյցներու եւ կարծեաց մասին:

---

350 Մանդակ. էջ 194, 6—7:

351 Մանդակ. էջ 195, 7:

352 Մանդակ. էջ 195. 23—197, 22:

353 Մանդակ. 197, 24—199, 40:

354 Մանդակ. էջ 197, 31, 35, 38, էջ 198, 12, էջ 199, 39:

355 Անդ, էջ 199, 15:

356 Մանդակ. էջ 198, 14—200:

Այժմ կը մնայ տեսնել ուրիշ կէտ մըն ալ, որ է պարսկական զրոյցներու Հայոց ծանօթ ըլլալը:

## § 22· ՊԱՐՍԿԱԿԱՆ ԶՐՈՅՑՆԵՐ

Զրադաշտական կրօնքին Հայոց վրայ տիրելովն եւ Հայոց եւ Պարսից սերտ յարաբերութիւններով հարկաւ նաեւ պարսկական զրոյցները եւ առասպելները ծանօթ պիտի ըլլային Հայոց եւ արդեամբ Խորենացւոյ քանի մը ակնարկութիւններէն կը տեսնենք որ ծանօթ էին[357]: Սահակ մեծ ախորժակ ունէր պատմած տեսնելու զայն զոր լսած էր յաճախ, իսկ Խորենացի յայտնելով իւր դժկամակութիւնը կը ցուցնէ միանգամայն որ արդեամբք կը պատմուէին Հայոց մէջ ալ պարսկական առասպելներ[358], եւ առաջին գրոց վերջը իբրեւ յաւելուած[359] դրած է Բիւրասպայ Աժդահակի առասպելը թէ ինչպէս «անբարի առաջնոց նորա բարեբարութեան, եւ դիւաց նմա սպասաւորութեան, եւ ոչ վրիպեցուցանել կարելոյ զվրիպեալն եւ զսուտն, եւ ուստի համբուրումն, եւ անդուստ զվիշապացն ծնունդս,

---

[357] Հմմտ. Մ. Էմին, Վէպք, էջ 54—75. Spiegel, Eranische Alterthumskunde, Leipzig, 1871, III, էջ 185—500 եւն:

[358] Խոր. Ա. էջ 63. «Զորոց տանեմք զբանս եւ զգործս, եւ այնոցիկ մանաւանդ թէ յուրն լսելիս մեր տաղտկացուցանէր, այսօր ձեռամբ իմով շարադրեմ զայնոսիկ, եւն»:

[359] Խոր. Ա. էջ 62—64:

*եւ յայնմ հետէ չարութեան յաճախութիւն, ծախել զմարդիկ ի պէտս որովայնի: Իսկ ապա եւ Հրուդենայ ումեմն կապել զնա սարեօք պղնձիւք, եւ ի լեառն տանել որ կոչի Դմբաւընդ: Այլեւ ի ճանապարհի զննջելն Հրուդենայ, եւ Բիւրասպեայ քարշելն ի բլուրն, եւ զարթչելն Հրուդենայ, եւ տանել զնա յայլս ինչ լերինն եւ կապել, եւ զինքն անդրի ընդդէմ նորա հաստատել, յորմէ պակուցեալ, հնազանդեալ կայ շղթայիցն, եւ ոչ զօրէ ելանել եւ ապականել զերկիր*[360]:

*Այս հակիրճ տողերուն մէջ պարսկական զրոյցներու մեծ մաս մը բովանդակուած է, ինչպէս կը տեսնենք: Սահակ ուզած էր անշուշտ որ նաեւ մեկնէ Խորենացի այս զրոյցը, եւ անոր համար կը սկսի համառօտիւ մեկնութիւն մ՚ալ գրել*[361] *յայտնելով միշտ իւր դժկամակութիւնը*[362]: *Բիւրասպ Աժդահակը Պարսից նախնին կը համարի*[363] *եւ իւր «անբարի առաջնոյ նոր բարերարութիւնը» կը մեկնէ թէ «հասարակաց զկենցաղս կամէր ցուցանել ամենեցուն, եւ ասէր՝ ոչ ինչ իւր առանձին ուրուք պարտ լինել, այլ հասարակաց. եւ ամենայն ինչ յայտնի եւ բան եւ գործ. եւ ի ծածուկ ինչ ոչ խորհէր, այլ զամենայն յանդիման արտաքս բերէր լեզուով զծածուկս սրտին: Եւ զել եւ զմուտ բարեկա-*

---

360 *Խոր.* էջ 62, 1—20:
361 *Խոր.* էջ 63—64:
362 *Անդ*, էջ 62, 21—30 *եւ* էջ 63, 2—15:
363 *Անդ*, էջ 63, 16, 17:

մայն որպէս ի տուընջեան նոյնպէս եւ ի գիշերի սահմանէր»[364]: Ապա մեկնելով միւս մասերն, ի մասնաւորի «ուսոց համբուրումն» կը յաւելու[365]: «Եւ այս, որ զսովորեալ չարութիւն նիւթէր, ուսուցանէր նման ի տան եւ ի հրապարակս, անկասկած զգլուխ ի վրայ ուսոց Բիւրասպայ դնելով, եւ խօսելով յականջսն՝ ուսուցանէր զանբարի արուեստն. զոր յառաջելն՝ մանուկ ստանայի, ասեն, սպասաւորելով լինէր կատարեալ. եւ ապա վասն որոյ պարգեւ ի նմանէ խնդրեալ, համբուրէր զուսսն»: — Վերջապէս «Վիշապաց բուսումն» կամ «կատարելապէս վիշապանալ Բիւրասպեայ, որ ասի[366]», կը մեկնէ այսպէս թէ Բիւրասպ մերժուեցաւ եւ վանեցաւ վերջապէս «ի նախատացեալ վերին կողմանս» եւ իր հալածիչները վստահացեալ քիչ մը հանդչեցան: Բիւրասպ այս միջոցին ցրուեալ զօրքը ժողովելով յանկարծակի վրայ կը հասնի, բայց կը յաղթուի եւ կը փախչի «եւ հասեալ սպանանեն զնա մերձ ի լեառն եւ ընկենուն ի վիհ մեծ ծծմբոյ[367]»: —

Մեր նպատակը չէ այս մեկնութիւնը քննել, այլ այսչափ միայն որ այս պարսկական զրոյցները հանրածանօթ էին Հայոց: Բայց թէ ոչ այսչափ միայն, այլ եւ մնացած

---

364 Անդ, էջ 63, 27—35:
365 Անդ, էջ 64, 9—16:
366 Անդ. էջք 64, 17, 18:
367 Անդ, էջ 64, 19—29:

մասերը պարսկական զրոյցներու ծանօթ էին։ Խորենացին է որ կը յիշէ[368] Ռոստոմ Սագճկի զրոյցը՝ ըսելով «Բայց թէ կամիս, ասեմ եւ ես յաղագս նորա անյաջ եւ փցուն, որպէս Պարսիկք վասն Ռոստոմայ Սագճկի հարիւր եւ քսան փղաց ոյժ ունել ասեն»։ Սասանեանց զրոյցներն ալ համառօտիւ կը յիշէ Խորենացի[369]. «Թողլով զառասպելաց նոցա բարբանջմունս։ Քանզի անտեղի է մեզ այժմ երկրորդել զառասպելսն յաղագս երազոյն փափագոյ, եւ արդարութեան հրոյն մանուածոյ՝ որ ի Սասանայ, եւ պատուոյն դհօտին, եւ լուսնակին, եւ ախտարմողացն յառաջասացուցն՝ որ են քաւդեայք, եւ որ ինչ զկնի այսորիկ. եւ պոռնկական խորհուրդն Արտաշրի հանդերձ սպանութեամբք, եւ անմիտ հանճարարանութիւն մոգին դատեր վասն նոխազին, եւ որ ինչ այլն ամենայն։ Նաեւ այծին դիեցումն մանկանն ընդ հովանեաւ արծուոյն եւ դուշակումն ագռաւուն, եւ դերապանծին պահպանութիւն առիւծուն հանդերձ արբանեկութեամբ գայլուն. եւ միայնամարտութեանն առաքինութիւն, եւ որ ինչ այլաբանութեանն բերէ կարգ»։ Այս համառօտ ամփոփումը կը դնէ մեր առջեւ երկայն շղթայ մը զրոյցներու եւ այն «որ ինչ այլեւ ամենայն», «որ ինչ զկնի այսորիկ» եւ նման խօսքերը կը ցուցնեն զրուցին ընդարձակութիւնը, եւ արդէն կ՚իմա–

368 Խոր. Բ. գլ. Ը. 79։
369 Խր. Բ. գլ. Հ. էջ 150—151։

նանք որ Բիւրասպէն սկսեալ մինչեւ ցնոր ժամանակները բովանդակ պարսկական գրոյցներու շղթան ծանօթ է Հայուն եւ այն՝ ճշդիւ ըստ Ֆիրդուսիի Շահ-Նամէի։

Յայտնի է որ Պարսից նշանաւոր բանաստեղծը Ֆիրդուսի Մահմուտ արքային (997—1030) օրերով՝ պարսկական բովանդակ գրոյցներն ու աւանդութիւնը հաւաքեց եւ բանաստեղծական գեղեցիկ ոճով գրեց. իւր այս գործը Շահնամէ կ՚անուանի, այսինքն «Գիրք Թագաւորաց»։ Սակայն Ֆիրդուսի 10րդ դարուն է, իսկ Խորենացի 5րդ, որով այս վերջնոյս այն քանի մ՚ակնարկութիւնները ունին մեծ արժէք։ Ահա ինչ կ՚ըսէ այս նկատմամբ գերմանացի իրանագէտը Շպիգէլ[370]»։ Թէեւ Ֆիրդուսի հաւատարմաբար ներկայացուցած է մեր առջեւ իւր ունեցած նիւթը, սակայն դեռ կը մնայ խնդիր թէ ո՞րչափ հին են այս նիւթերը եւ խնդիր է թէ ի՞նչ երաշխաւորութիւն ունինք հաստատելու թէ Սասանեանց ատենն ալ կային այս ամենայն։ Բայց այժմ կարող ենք հաստատութեամբ վճռել զայս եւ ստոյգ է թէ Սասանեանց իշխանութեան ատեն ալ այս գրոյցներն այն կերպարանքով էին՝ որով ունինք այժմ։ Այս բանիս ցուցման համար մեծ արժէք ունին Մ. Խորենացւոյ քանի մ՚ակնարկութիւնները, որուն խօսքերէն ըստ իմ կարծեաց, դեռ չեն հանուած այն ամենայն հետեւու-

370 Fr. Spiegel, Eranische Alterthumskunde. Leipzig, 1871. Band I, Buch III, S. 491—492.

թիւնները, որոնք ապահովութեամբ կրնան հանուիլ: Սոյն պատմագիրն իւր Հայոց պատմութեան Ա. Գրոց վերջը դրած է յաւելուած մը, որուն մէջ կը յիշէ պարսկական առասպելները Աժդահակայ (Dâhaka) Դըմբաւընդ լերան մէջ շղթայի զարնուելուն նկատմամբ: Բաւական դժկամակութեամբ կ'ըսէ թէ ոչ եթէ կամաւ գրած է զասոնք, այլ Բագրատունի Սահակայ խնդրելովը, որուն համար իւր գիրքը գրեց: Խորենացւոյ պատմած պատերազմը ի մէջ Թրետաւոնայ (Thraetaona) եւ Աժդահակայ (Dahaka) մինչեւ մանրամասնութեանց մէջ անգամ կը միաբանի մեր ուրիշ աղբիւրներու հետ: Այս ծանօթութենէ կը հետեցնենք սա հետեւեալը: Նախ յայտնի է թէ ինչպէս կ'ատէր քահանայ պատմագիրը այն ամենայն որ իրանական է մինչեւ դրոյցներն անգամ եւ իւր այս ատելութեան պատճառն յայտնի կը տեսնենք Հայաստանի պատմութեան մէջ: Բայց միանգամայն կը տեսնենք որ աշխարհականներն ալ միեւնոյն ատելութիւնը չէն ցուցներ: Յայտնի է որ Սահակ կը կ'ուզէր որ Խորենացի պատմէ Աժդահակայ դրոյցը եւ Խորենացւոյ դժկամակութեան խօսքերէն կրնանք իմանալ որ շատ թախանձած պիտի ըլլայ Սահակ: Բայց եւ այն որ Խորենացւոյ յիշած դրոյցներն ճշդիւ կը նմանին անոնց հետ, զորոնք այլուստ գիտենք, յայտնի կը ցուցնէ թէ Հայաստանի մէջ ալ այնպէս կը պատմուէին այս դրոյցներն, ինչպէս եւ

Իրանի մէջ, ուստի ոչ այլայլեալ եւ ոչ ալ հայկական տեղերու հետ կապուած փոխանակ իրանական տեղերու։ Նոյնը կը ցուցնէ մեզ նաեւ Խորենացւոյ մէկ ծանօթութիւնը, որով հին հայ դիւցազնի հետ կը համեմատէ Ռոստոմը (= Rustem) Սագճկի իշխողը (= Segestân) Բ, գլ. ը)։ Ուստի եւ Հայաստանի մէջ ալ ծանօթ էր Ռոստոմ եւ կը համարուէր տէր Սագճկի (= Սագեստան) եւ այսպէս հայ պատմագրին տուած տեղեկութիւնները գէթ այս կը ցուցնեն թէ հինգերորդ դարուն մէջ երանական գրոյցներն արդէն նոր արդի կերպարանքն ունէին»։ Այսչափ Շպիգէլ, որ յետոյ ընդարձակ յառաջ կը բերէ Դահակայ[371] եւ Հրուդենի[372], Ռոստոմայ[373] գրոյցները ըստ Ֆիրդուզիի, եւ այս ամենայն ճշդիւ կը միաբանին Խորենացւոյ յիշած ակնարկութեանց հետ։ Թէ Հայերը բերանացի՞ միայն գիտէին սոյն գրոյցները, թէ գիտէին նաեւ անոնց ընիկ լեզուաւ գրուած գրքերը (գ. օ. Զենտաւեստ, Վետա Հնդկաց եւն) ստոյգ չենք գիտեր։ Խորենացի կ՚ըսէ լոկ թէ լուրը կը տաղտակացնէր, բայց որովհետեւ Հայերը հայ գրերու գիւտէն յառաջ պարսիկ գրով (= լեզուաւ) կը գրէին, եւ գրագաշտութիւն

---

[371] Հմմտ. Eranische Alterthumskunde, I. Bd. III. Buch, S. 530—544.

[372] Անդ. էջ 544—555։

[373] Անդ. էջ 586—591։

պաշտելով՝ հարկաւ Հայոց քուրմերն ալ կը սորվէին իրենց դէնը բնիկ ադբիւրներէն։ Բայց նաեւ շատ ետքն ալ մերթ ընդ մերթ կը լսուէին դէթ օտար եկերէն սոյն եւ նման զրոյցներ յաշխարհին Հայոց։ Թովմաս Արծրունի (Ժ. դար) Շախրիճներէն լսած եւ նկարագրած է, երկինք հասնող լեռն ու լայն դաշտը՝ այն «անծանօթ երկիրը» որ էր տեղի դրախտի նախահօր մարդկան[374], եւն, կը գտնենք ճշդիւ ամենահին արիական զրոյց-ներու մէջ[375]։

Անգիր մատենագրութեան այս մասը կնքելով կը յաւելունք ըսել թէ շատ ընդար-ձակ եւ գեղեցիկ մատենագրութեան շարժ-ման հետքեր միայն նշմարել, անգիր մատե-նագրութեան մը որուն կորուստն եւ սպառասպուռ անհետ ըլլալն անդարմանելի է մեզի համար[376]։ Երանի՛ թէ բախտ մը յա-ջող դէթ քանի մը հատուակոտոր հանէր ի լոյս։

374 Թովմ. Արծր. պտմ. Պետերբ. 1887, Ա. գլ. ր, էջ 28։

375 Spiegel, Eran. Alterth., էջ 463 եւ այլուր։

376 Քննական Քերականութիւն արդի Հայերէն լեզուի, յօրինեց Գեր. Հ. Արսէն Վ. Այտընեան. Վիեննա, 1866. Ներածութիւն, էջ 44։

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՀԻՆ ԴԱՐԵՐԸ ԿԱՄ ԾԱԳՈՒՄԸ

### § 23. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ

Հայկական լեզուի վրայ խօսող այս մասին նպատակն է միայն նկատել այն լեզուին հնագոյն դարերը կամ ճշդիւ ըսելով ծագումը եւ միւս լեզուներու հետ ունեցած աղերսը: Աստիւ նկատելով պիտի խօսուէր այս մասին մէջ՝ 1. ընդհանրապէս հայ լեզուին ծագման խնդրին վրայ. 2. հայ լեզուին ծանօթ կերպարանաց վրայ կամ թէ ըսենք այն խնդրին վրայ թէ հայկական լեզուով կա՞ր սեպագրութիւն եւ եթէ կար՝ ի՞նչ կերպարանք ունէր այն հայերէնը եւ 3. ի՞նչ կերպարանք ունէր հայերէնը քրիստոնէութեան առաջին դարերուն մէջ կամ մերձաւորապէս Գ. եւ Դ. դարերու մէջ: Ուրիշ շատ մը խնդիրներ ալ կրնան յուզուիլ հարկաւ, բայց ատոնք այս մասին չեն վերաբերիր, այլ իւրաքանչիւր ժամանակի կամ շրջանի վրայ խօսած ժամանակը կը քննենք ատոնք ալ, այնպէս որ մատենագրութեան պատմութեան հետ գիրկ ընդ խառն կը հիւսենք հայ լեզուի պատմութիւն մ'ալ: Բայց նաեւ ոչ յիշեալ երեք կէտերը հոս կարելի է մանրակրկիտ քննել, այնու մանաւանդ որ առաջին եւ երկրորդ կէտին այսինքն լեզուագիտութեան սեպա—

գրութեան խնդրին նկատմամբ յետոյ թերեւս առիթ ունենանք ուրոյն գրութեամբ խօսիլ, իսկ երրորդի վրայ սակաւ ինչ գիտենք եւ այն լոկ հինգերորդ դարու գրաւոր լեզուէն հետեւցնելով, ուստի եւ այս մասը աւելի հինգերորդ դարու լեզուի քննութեան կը վերաբերի· դոյզն ակնարկութիւն մ՚ալ արդէն վերն ըրինք (Հմմտ. § 17. Ե.) : Այստեղ կը ճնայ ուրեմն խօսիլ նախ՝ Հայ լեզուի ծագման կամ հայ լեզուի ստուգաբանութեան պատմութեան վրայ եւ այն նկատելով հայ քանի մը բանասէրներու այս դարուս սկիզբները հանած քանի մը նորանշան կարծիքները հայերէնի նկատմամբ, եւ երկրորդ՝ հայ լեզուն նկատել ըստ նորագոյն լեզուաբանական քննութեանց :

## § 24. ՀԱՅ ԼԵԶՈՒ : — ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

Հայկական լեզուի ծագման վրայ շատ բազմաթիւ գրութիւններ եւ Յօդուածներ լոյս տեսած են, բայց առաւել եւրոպական լեզուով· շատ անգամ ալ ոչ թէ ուրոյն գրութեամբ՝ այլ ընդհանուր լեզուագիտութեան կամ այլ ուրիշ լեզուներու վրայ խօսուած ժամանակ : Անոնք այստեղ միառմի յիշել չէ տեղւոյս, բայց մի քանին առիթ կ՚ունենանք յընթացս այս հատածին յիշելու : Առ այժմ գոհ կ՚ըլլանք նշանակելով այս հետեւեալները : Johann Joachim *Schröder* լոյս հանեց իւր Thesaurus linguae armeniacae, Amstelodami, 1711, ընդարձակ

յառաջարանութեամբ։ Աւելի նշանաւոր եղան Julius Heinrich *Petermann*, իւր Grammatica linguae armeniacae. Berlin, 1837. — Friedrich *Windischmann*, Die Grundlage des Armenischen im arischen Sprachstamme, որ նախ հրատարակուեցաւ Բաւերիոյ Ակադեմիայի գրութեանց մէջ (Abhandlungen der ersten Classe der bayerischen Akademie der Wissenschaften, 1846, IV, 2) եւ յետոյ նաեւ առանձին տպուեցաւ։ — *R. Gosche*, de ariana linguae gentisque armeniacae indole prolegomena, Berlin, 1847. — Տատ աւելի համբաւաւոր եղաւ այս նկատմամբ Պաւլ դը Լագարդ (հին անուամբ՝ Բէօտտիխէր) իւր բազմաթիւ գրութիւններով, որոնցմէ յիշենք հետեւեալները. *P. Boetticher*, Vergleichung der armenischen Consonanten mit denen des Sanscrit, ի Թերթին Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft, 1850, էջ 347—369։ — *P. Boetticher*, Arica, Halle, 1851, եւ յաջորդ տարին նոյն քաղաքին մէջ իւր՝ Wurzelforschungen գրութիւնը։ Իսկ Paul de Lagarde անուամբ գրած է՝ Zur Urgeschichte der Armenier, ein philologischer Versuch, Berlin, 1854. — Gesammelte Abhandlungen, Leipzig, 1866։ Տատ գեղեցիկ գործք մըն է նոյն հեղինակին Armenische Studien, Göttingen, 1877, որ նոյն քաղաքին գիտութեանց արքունական ընկերութեան գրութեանց մասն է եւ ստու-

գարանական բառդիրք հայ լեզուի, որուն մէջ նշանակուած են ամէն բառի գիմացն այլեւայլ հեղինակներու տուած ստուգաբանութիւնները։ Իսկ էջ 191—209 մեծադիր էջերու մէջ ամփոփած է հայերէն լեզուի ստուգաբանութեան զարգացման պատմութիւնը, շատ նշանաւոր գործ մը, որ մեր ալ առաջնորդն է այս մասին մէջ։ — *F. Spiegel*, Grammatik der Huzwaresch-Sprache, 1856, որուն վերջն իբրեւ յաւելուած դրուած է ճառ մը հայերէնի սոյն լեզուին հետ ունեցած աղերսին վրայ։ Սոյն նիւթոյ վրայ գրեց նոր ժամանակներս *Mgr. de Harlez*, Manuel du Pehlevi des livres religieux et historiques de la Perse. Louvain, 1880։ — Բազմաթիւ գրութիւններ հրատարակեց *F. Müller* Վիեննայի ճեմարանի գրութեանց մէջ Հայոց լեզուի նկատմամբ, որոնց մէջ յիշենք. Zwei sprachwissenschaftliche Abhandlungen zur armenischen Grammatik, 1860. — Beiträge zur Lautlehre der armenischen Sprache, I, 1861 եւ II 1863, III, 1863. — Beiträge zur Conjugation des armenischen Verbums, 1863 եւ նոյն տարին գարձեալ Beiträge zur Declination des armenischen Namens, 1863. — Armeniaca I 1864, II 1870, III 1870 եւ IV 1874։ — Յիշենք վերջապէս H. Hübschmann, Armeniaca. Originalwörter, I—III. Strassburg, 1881, որ հայ բառերու արմատներու վրայ

նշանաւոր քննական գործ մըն է, — Armenische Studien, 1883 եւ այլեւայլ Յօդուածներ, այսպէս ի թերթին Kuhn's Zeitschrift für vergleichende Sprachforschung, XXIII, 5—49· — Յիշենք վերջապէս նաեւ Chr. Bartholomae, ի թերթին Bezzenberger's Beiträge zur Kunde der indogermanischen Sprachen, X, 289 ff.

Այլ անթիւ անուղղակի եւ ուղղակի սոյն նիւթիս վրայ գրուած գրութիւնները· ցայժմ յիշուածք ալ գերմականներ են միայն, թէեւ արդեամբ հայ լեզուաքննութիւնը Գերմանիոյ մէջ ծաղկեցաւ։ Իսկ Հայոց մէջ այս նիւթին վրայ գիտնականօրէն գրողք սակաւ են եւ են Ք· Պատկանեան, Թէ ի՞նչ տեղ է բռնում հայերէն լեզուն Հնդկա—եւրոպական լեզուների շրջանում, Հրատարակեալ ի Փորձ, 1880· III, էջ 77—98· Նոյն հեղինակը գրեց նաեւ ռուսերէն նշանաւոր գրութիւն մը այս մասին անուամբ К. П. Патканова Изслѣдованіе о составѣ Армянскаго языка. С. Петербургъ, 1864 եւ զոր գաղղիերէն թարգմանեց M. Ēv. Prud'homme, ի թերթին Journal Asiatique, 1870, II, p. 125—293 այս տիտղոսով՝ Recherches sur les formations de la langue arménienne. Երկրորդ նշանաւոր գրութիւնն եղաւ Հ'· Սերովբէ Վ· Տէրվիշեանի Հնդեւրոպական Նախալեզու, Կ· Պոլիս, 1885· որուն վրայ զննութեամբ խօսեցաւ Փր· Միւլէր· (Հմմտ·

Հանդէս Ամսօրեայ, Ա. 1887, թիւ 11, էջ 167—68)։ Նոյն ընդունելութեան արժանի չգտնուեցաւ հեղինակին ուրիշ մէկ գրութեանց գերմաներէն լեզուով S. Dervichian, Armeniaca I, Das altarmenische Ք. Wien, 1875, որուն նկատմամբ հմմտ. H. Hübschmann, ի թերթին ZDMG. XXX, 774 չ. եւ Lagarde, Armenische Studien, էջ 1 եւ 206։ Լեզուաբանական Յօդուածներ եւ ի մասնաւորի հայ Զ. գրոցն վրայ հրատարակեց ի մէջ այլոց Լեզու թերթին մէջ, Կ. Պոլիս, 1887։ — Այլեւայլ Յօդուածներէն յիշենք Մ. Ա. Գարագաշեանի Պատմութիւն Հայ լեզուի ի թերթին Ճաշակ Ոսկեղէն դպրութեան, ուրոյն հրատ. Կ. Պոլիս, 1887, էջ 7—52։ Իսկ Հ. Ղ. Ինճիճեան ի Հայերէն լեզու (Հնախօսութիւն, Գ. Հրտ. էջ 1—32, նոյնպէս նաեւ Հ. Գարեգին Զարբհանէլեանի Հայկական հին Դպրութեան Պատմ. Հտ. Ա., էջ 84—115 «Հայերէն լեզու»ի նկատմամբ եւ նման այլ գրութիւնք հազիւ թէ յիշուելու արժանի են։ — Յիշենք ի վերջոյ նորագոյն ժամանակի մէջ գրող J. Hanusz, Sur la langue des arméniens polonais, Cracovie, 1886 (հմմտ. Հանդէս Ամսօրեայ, Ա. 1887, թիւ 2, էջ 23) եւ նոյն հեղինակին Lautlehre der polnisch-armenischen Mundart von Kuty in Galizien. Wien, 1889 (հմմտ. Հանդէս Ամսօրեայ, Դ. 1890, թիւ 2, էջ 41—43)

— Bugge, Beiträge zur etymologischen Erläuterung der armenischen Sprache, I. Christiania, 1889. — Etruskisch und Armenisch, I. Christiania 1890.

A. Томсона, Лингвистическия изслѣдованія, С. Петербургъ, 1887, VII, 120 էջ, որուն նկատմամբ տես Հանդէս Ամսօրեայ, Ա․ 1887, Թիւ 12 կողին վրայ։ Իբրեւ լեզուաբանական բաղդատաքննութիւն, բայց ոչ լեզուագիտութիւն յիշուելու արժանի է Սարգիս Սարգսեանց, Ագուլիսի բարբառը (Զոկերի լեզուն)․ Մոսկուա, 1883։ Ուրիշ նման բարբառներու վրայ գրուածներ յետոյ իրենց տեղը կը յիշենք, ինչպէս նաեւ հայերէնի ստուգաբանութեան վրայ անուղղակի խօսող հեղինակներուն մի քանին քիչ մ'ետքը կը յիշենք, հոս դնելով միայն *F. A. Pott*, Vergleichende Grammatik, 2. Aufl. 1857—61, եւ *Brugmann*, Grundriss der vergleichenden Grammatik, 1886։ Առաջինը գաղղիերէն ալ թրգմ․ *Michel Bréal*, Grammaire comparée des langues indo-européennes, Paris, 1866—72, 4 հատ․։ — Յիշենք վերջապէս Lauer, Grammatik der classischen Armenischen Sprache. Wien, 1869, եւ այս գրոց գաղղիերէն թարգմանութիւնը, A. Carrière, Grammaire arménienne, Paris, 1883.

## § 25. ՀԻՆԵՐՈՒ ԿԱՐԾԻՔԸ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՆԿԱՏՄԱՄԲ

Տեղւոյս չէ մանրամասն քննել բուն հին կամ այժմ արդէն հին համարուող հեղինակներու կարծիքները յառաջ բերել, որոնցմէ ոմանք, ինչպէս Ստրաբոն[377] Ասորւոց եւ Արաբացւոց նման եւ ազգակից կը դնեն Հայերը եւ հայոց լեզուն, գլխաւոր ցուցմունք առնելով այն պարագան ալ որ Հայերը կը կոչուին Ἀρμένιοι (= Արմնիք), նոյնպէս Ասորիք ալ՝ Արամեանք: Այս կարծիքն ունեցան շատ մը գիտականններ նաեւ եւրոպացիներ[378]. ուրիշներ հրէական լեզուի ծնունդ համարեցան[379], դարձեալ այլք եթովպական նին հետ սկսան համեմատել[380], մինչեւ նաեւ Թուրքերէնի ցեղակից կամ դուստրն անգամ դրին նոր աղճատ լեզուէն դատելով: Շատ աւելի հին եւ աւելի հաստատուն կարծիք մըն է այն թէ Հայերը Փռիւգացւոց հատուած են եւ հայ լեզուն փռիւգականն է, զոր արդէն Հերոդոտոսի քով կը տեսնենք ակնարկուած[381], բայց աւելի որոշ Եւդոքսիոս առ

---

[377] Ստրաբոն, Ա. գլ. 41:

[378] Հմմտ. Ինճիճեան, Հնախ. Գ. էջ 4 եւ ծ. 162:

[379] Կարմէր. Մեկն. Ծննդ. ԺԱ. 7 եւն:

[380] Հմմտ. Schröder, Tesaurus, էջ 53:

[381] Հերոդոտ. է, 73 եւ այլուր. Հմմտ. եւ Ստեփ. Բիւզանդացւոյ խօսքն առ Ինճիճեան, Գ. էջ 5:

Դիոնեսեայ[382], որ յայտնապէս հայ լեզուն փռիւգերէնի նման կ՚ըսէ: Այս կարծիքն ունին նոր շատ մը գիտնականներ ալ, այսպէս Ռաուլինսոն[383], որ Հայաստանի հին բնակիչներն (= Ուրարտացիք) ուրիշ լեզու խօսող կը համարի, իսկ Հայերն յետոյ գաղթած փռիւգիայէն եւ տիրապետած կը համարի: Նման կարծիք մ՚ալ ունի գաղղիացին Լընորման[384] եւ Լուի դը Ռոբեր եւ այլք որոնց տեսութիւնները քիչ մ՚իրարմէ կը տարբերին, որոնց վրայ յետոյ կը խօսինք, երբ սեպագրութեանց վրայ խօսելու առիթ ունենանք: Թողլով այս խնդիրներն անցնինք մեր բուն նիւթին:

Անցեալ դարուն վերջերն եւ այս դարուս սկիզբներն որոշ նպատակ եւ ուղղութիւն մը կը նշմարուի ըստ կարի բարձրացնելու հայ լեզուն եւ այլ հայկական հնութիւնները: Այս շարժման գլխաւոր ներկայացուցիչն են Չամչեան, Աւգերեան, Ինճիճեան եւ այլք, որոնք ի մասնաւորի լեզուին նկատմամբ ամենայն ճգամբք ջանացին ցուցնել թէ հայ լեզուն մայր է ամէն լեզուաց, Ադամայ խօսած լե-

---

382 Եւդոքսիոս առ Եւստաթեայ Դիոնեսեայ՝ ասէ Ἀρμένιοι τὸ γένος ἐκ Φρυγίας καὶ τῇ φωνῇ πορρὰ φρυγίζουσιν.

383 Memoir on cuneiform inscriptions: IRAS X, p. 25 etc.

384 Lettres assyriologiques, I (Paris 1871), p. 113—164.

զուն է եւ այլ նմաններն, որոնց բովանդակ տղայական ցուցումներն ի մի հաւաքուած են Ինճիճեանի վերը յիշուած գրութիւններու մէջ: Այս գաղափարը տիրեց այնպէս որ, դեռ ցայսօր նոյնին արձագանգները կը լսենք[385], իբր այն թէ լեզուագիտութեան գիտութիւնը բնաւ եւ գոյութիւն իսկ չունենար: Մանաւանդ թէ իբրեւ մեծ զէնք առած են զայն թէ օտարներու կարծիքները խոտելի են, վասն զի Հայոց աւանդութեանց տեղեակ չեն, եւն: Հետաքրքրական է անշուշտ լսել թէ ինչ պատճառաբանութիւններ ստեղծած էին այս գրութիւնը հաստատելու համար: Ահաւասիկ Ինճիճեանի փաստերը[386]. Ի պատմութենէ արդէն գիտեմք հաւաստեաւ եթէ մի ի շինողացն աշտարակին, որոց խառնակեցաւ լեզուն, էր եւ Հայկ նախահաւ մեր, որ եւ իբրեւ իւրովքն հանդերձ դարձաւ յաշխարհ իւր, զիւր լեզուն զիարդ եւ իցէ եթող ի սերունդս իւր եւ յազգ իւր... իսկ թէ նոյն հայկեան լեզուն էր որ մնաց անդր յաշխարհի իւրում ի Հայաստան, եւ յաջորդութեամբ եհաս մինչեւ առ մեզ, զայս յայտնի հաւաստեն անուանք տեղեաց եւ արանց հեռահեռաք անուանեալք ի Հայկայ եւ ի յետագայից նորա մինչեւ ցայժմ մնացեալ նովին նշանա-

---

385 Հմմտ. Հայկական հին Դպր. էջ 85—91 եւ 102, 7—11:

386 Ինճիճեան, Հնախօսութիւն, Գ, էջ 2—4:

կութեամբ որովք կոչեցան ի սկզբան անդ, եւ որով նշանակութեամբ վարէ նաեւ այժմեան լեզու մեր զնոյն բառս. յորոց եւ զոմանս յառաջ բերցուք օրինակի աղագաւ»: Ահա դնենք մենք ալ օրինակները: Հայկ կը շինէ գիւղ մը եւ իւր անուամբ Հայկաշէն կ'անուանէ, Բելայ թաղուած տեղը կը կոչուի Գերեզմանք, եւն, իբրեւ այն թէ այս ժողովրդական աւանդութիւնները եւ անուանակոչութիւնները Հինգերորդ դարու քանեակ դարեր յառաջ ալ կային անփոփոխ: Արագած կը մեկնուի Արմենակայ ագած, Արմաւիր՝ Արմայիսայ իր Գեղամ՝ գեղ ամենայն: Ցոլակ՝ ցոլացեալ ակն, Արարատ՝ Արայի արատ, Տիգրան՝ տէգ երան, Վահագն՝ ով ահագին. եւ իբրեւ շատ նշանաւոր փաստ պէտք էր յիշել նաեւ Մագիստրոսի խօսքը՝ որ նոյնպէս կը ստուգաբանէ այս անունները «Ուր Գեղամայ գեղեցկութիւն... ուր փառնակ փառացի... ուր Հաւանակ դիւրահաւան, ...ուր Հրանտ հրատեսակ եւն: Այս ամէն ցուցումներէն ետքը հարկաւ կըրնայ հետեւցնել դոհ սրտիւ[387]. «Այս ամենայն անուանք շատ իսկ ցուցանեն թէ այժմեան մերս գրոց լեզու՝ էր նոյն իսկ լեզու՝ որով խօսէին նահապետք մեր, եւ նոյնինքն իսկ Հայկ: Ուստի եւ է լեզու իջեալ ի ժամանակէ անտի աշտարակաշինութեան, տեւեալ եւ հանապազորդեալ մինչեւ ի մեզ. որով լինի

---

387 Անդ, էջ 3, 29:

մայր լեզու» ։ *Այսպէս նոյնիսկ դարուս առաջին կէսին ։ Չի կրնար ըսուիլ թէ այս կարծեաց սկզբնապատճառը Խորենացին է. վասն զի թէեւ Խորենացի է որ այս ստուգաբանութիւններու մի քանին կը դրէ*[388], *բայց անոր նպատակն ուրիշ բան չէ եթէ* ոչ իւր ատենն ծանօթ *անուններն հնագոյն աւանդութեանց մէջ փնտռել, եւ ոչ թէ Հայկայ լեզուն* մայր լեզու, *կամ* անփոփոխ պահուած *եւ այլ նման ենթադրութիւններ ընել, որոնց գաղափարն (իսկ չունէր)* ։



388 *Հմմտ. Խոր. Ա. գլ. Ժ. Ժա. Իբ. Բ. գլ. Լգ, եւ այլուր յաճախ* ։